# ԻՏԱԼԵՐԷՆ ԵՒ ՀԱՅԵՐԷՆ
# ՊԱՐՍԱՒԱԳՐՈՒԹԵԱՆ
# ՀԵՐՔՈՒՄԸ

1852

Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ
Ի ՏՊԱՐԱՆԻ
ՊՕՂՈՍԻ ԱՐԱՊԵԱՆ
ԱՊՈՒՉԵԽՑՒՈՅ

Perperean, Awetis
Italeren ew hayeren...

# ԻՏԱԼԵՐԷՆ ԵՒ ՀԱՅԵՐԷՆ

## ՊԱՐՍԱՒԱԳՐՔԵՐՈՒՆ

# ՀԵՐՔՈՒՄԸ

ՀՐԱՄԱՆԱՒ
ՎԵՀԱՓԱՌ ՊԱՏՐԻԱՐԳԻ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ
Տ. ՅԱԿՈԲԱՅ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ
ՅՈՐԹԱԳԻՒՂ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՊՕՂՈՍԻ ԱՐԱՊԵԱՆ
ԱՊՈՒՉԵԽՑԻՈՑ
1852

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Այս օրերս երկու գիրք անցան ձեռքս, մէկը իտալերէն եւ միւսը հայերէն. իտալերէն գրքին իմաստը Վենետիկի Մխիթարեան միաբանութիւնը կամբաստանել, թէ հերձուածող եւ հերետիկոս Հայոց հետ հոգեւոր հաղորդակցութիւն ընելնուն համար՝ իրենք ալ հերձուածող եւ հերետիկոս են. եւ այս հաղորդակցութիւնը ունենալնին հաստատելու համար՝ ութը ինը աւիթներու մէջ անոտի եւ սուտ զրպարտութեամբ առատօրէն թշնամանք եւ հայհոյանք ըրեր է՝ ոչ միայն Մխիթարեան միաբանութեան, այլ եւ բոլոր ազգիս։ Իսկ հայերէն գիրքը՝ իրեն նպատակ ընելով ուղղակի այն ամբարիշտ գրուածքին պատասխանելու, անոր առաջարկութիւնները ջրելու, եւ զիրենք հռովմէական եկեղեցւոյ հարազատ որդի ցցընելու, անուղղակի կերպով Հայոց ազգիս եւ եկեղեցւոյս հերձուածող եւ մոլորեալ գրելով՝ որպէս թէ հաստատութիւն մը տուեր է այն պարսաւագրքին զրպարտութեանցը։ Աստի յայտնի բան է, թէ ի՞նչ հոգւով գրուած են այս երկու գիրքն ալ թէ իտալերէնը եւ թէ հայերէնը. ոչ շնորհաց եւ խաղաղութեան եւ Սիրոյն հոգւովը, ոչ երբէք. այլ խռովութեան՝ նախանձու՝ վրէժխնդրու-

թեան՝ եւ դիւական հոգւով, ինչպէս են հերետիկոսաց գրքերը։

Ցաւալին այն է, զոր կ՚ողբան եւ կը վկայեն խոհական եւ իմաստուն անձինք, այս անիրաւ գրքերս պատճառ եղան այս լուսաւորեալ եւ ամենափափուկ ժամանակիս մէջ հնուց մոռցուած փտած եւ ապականած գէշութիւնները նորէն երեւան հանել, հասարակութեան մէջ երկպառակութիւն սերմանել, համազգի եւ համարիւն երկու եղբայր իրարմէ բաժանել. անոնց մէջ փոխանակ եղբայրսիրութեան եւ ձեռնտուութեան իրերաց՝ ատելութիւն, կռիւ, խրաու-ծուռ նայիլ, եւ թշնամանք ձգել. մտածէ ասոնցմէ յառաջ գալիք վնասակար հետեւանքը։ Աստ որոյ՝ պարտ եւ արժան կը համարիմ այս գրոյս հերքել եւ ցրել այն երկու անիրաւ պարսաւագրքերուն մէջ պարունակեալ՝ զրպարտութիւնները եւ անատեղի առաջարկութիւնները, եւ Հայաստանեայց Սուրբ Եկեղեցւոյն ուղղափառութիւնը յայտնի ընել ճշմարտութեան հոգւով. ոչ թէ հին վիճաբանութիւնները նորոգել, կռիւներու միջոցներ եւ դռներ բանալ, այլ բացէ 'ի բաց հասկըցընել. որ Հայոց եկեղեցին հերձուածողութեան կամ հերետիկոսութեան արատ մը չունի իր մէջը. այլ 'ի սուրբ Լուսաւորչէ ասդի ինչոր ընդուներէ Քրիստոնէական սուրբ հաւատք հանդերձ ուղղափառ վարդապետութեամբ եւ ազգային ծիսիւք եւ արարողութեամբք, զնոյնս անփոփոխ կը պահէ եւ կը պաշտէ եւ պաշտեսցէ մինչեւ 'ի կատարած աշխարհի։ Բայց մեր հակառակորդները ո-

րովհետեւ այլեւ գիտեն եւ ՚ի խղճէ մտաց կը վկայեն, որ Հայոց եկեղեցին հերձուածողութիւն կամ մոլորութիւն մը չունի. ուստի կ՚սկըսին քանի մը անտեղի եւ սուրբ գրոց հակառակ վարդապետութիւններ պահանջել մեզնէ. Ա, թէ՝ Քրիստոս միայն Պետրոս Առաքելոյն եւ անոր յաջորդներուն տուաւ բացարձակ եւ անհուն իշխանութիւն ամենայն քրիստոնէից վրայ. եւ անոր միայն յանձնեց ընդհանուր եկեղեցւոյն հոգաբարձութիւնը։ Բ, Հռովմայ Պապը կամ սուրբ ժողովքը անսխալ է, եւ անոր վճիռները չընդունողը՝ հերետիկոս եւ հերձուածող է։ Գ, Հայոց եկեղեցին՝ Քրիստոսի երկու բնութեանց վրայ ծուռ եւ մոլոր կարծիք ունենալուն համար՝ Քաղկեդոնի ժողովը եւ Լեւոն Պապը կը հերքէ։ Այս ամբաստանութիւններուն վրայ համառօտիւ պիտի խօսիմք, նոյն իսկ Հռովմայ պապերը եւ լատինացւոց աստուածաբանները վկայ բերելով. բայց նախ եւ յառաջ մեր սուրբ Եկեղեցւոյն դաւանութիւնը դնենք համառօտիւ, որպէս զի ծուռ եւ գէշ լուրերը հասկընան ճշմարիտը եւ չգայթակղին. եւ անիրաւ զրպարտողներն ալ՝ առջեւնին նային։

# ՍՐԱՆ ՐՈՐԳԻՆ

Բացատրութիւն ուղղափառ հաւատոյ եւ ՚դաւանութեան հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ։

1. Եկեղեցին հայոց ՚ի սկզբանէ անտի մինչեւ ցայսօր կը հաւատայ յԱմենասուրբ երրորդութիւնն Հայր, Որդի, եւ սուրբ Հոգի. երեք անձինք եւ մի Աստուած. մի էութիւն, մի բնութիւն, մի կամք, եւ մի Տէրութիւն։

2. Կը հաւատայ զխորհուրդ մարդեղութեանն Քրիստոսի՝ կատարեալ Աստուածային բնութիւն եւ կատարեալ մարդկային բնութիւն ՚ի մի Աստուածային անձն Քրիստոսի անշփոթ եւ անբաժան միաւորեալ։

3. Կը հաւատայ զՀոգին սուրբ Աստուած՝ բղխումն ՚ի հօրէ եւ առող յորդ-

ւոյ՝ ըստ ուսուցանելոյ Սրբազան Հարց մերոց։

4. Կը հաւատայ, թէ արդարք երթան ՚ի կեանս յաւիտենականս, եւ մեղաւորք ՚ի տանջանս յաւիտենականս, իսկ Ներելի մեղք ունեցող կամ մահացու մեղաց ապաշխարանքը չվճարող հոգիները՝ որ կատարեալ զղջմամբ եւ խոստովանութեամբ հաղորդերեն Քրիստոսի մարմնոյ եւ արեանը, անոնք կերթան կայանքը. եւ սուրբ Պատարագին շնորհիւը կը գտնան ներումն եւ հանգիստ, եւ կ'ըլլան ժառանգ արքայութեան։

5. Կը հաւատայ զեկեղեցին Քրիստոսի մի, սուրբ, կաթողիկէ, եւ առաքելական։ Կը խոստովանի Սուրբ Եկեղեցւոյն եօթն խորհուրդները։ Եւ սա ընդհանուր Սուրբ Եկեղեցւոյն Սրբազան Հայրապետները կը յարգէ եւ կը ճանաչէ իբրեւ երեսփոխան Քրիստոսի։ Նոյն այս է Հայաստանեայց Սուրբ Եկեղեցւոյն աւանդական հաւատքը. զոր ՚ի Լուսաւորչէ անտի մինչեւ ցայսօր եւ մինչեւ ՚ի կատարած աշխարհի՝ անփոփոխ կը պահէ հեռի յամենայն առանձին հերձուածողաց եւ հերետիկոսաց։ Եւ այս անանց անխախտելի ճշմարտութիւն մին է, որ թէ եպիսկոպոս՝ թէ կաթողիկոս՝ եւ

Թէ պարզ՝ թէ որ այս ուղղափառ հաւատքը չունինք, հերետիկոս ենք։

Որով կը հետեւի, թէ մէկ ազգ մը կամ եկեղեցի մը՝ որ ուղղափառ հաւատք ունի, եւ կը դաւանի այն ամէն ճշմարտութիւնը, որ Քրիստոսի կաթողիկէ եկեղեցին կը դաւանի եւ կուսուցանէ, այն ազգին եւ եկեղեցւոյն հերետիկոս եւ հերձուածող ըսողը՝ ինքն է հերետիկոս եւ հերձուածող։

## ՄԱՍՆ․ Բ

*Արդեօք Քրիստոս միայն փափի՞ն տուաւ բացարձակ եւ անկախ իշխանութիւն ամէն՝ քրիստոնէից վրայ, եւ իրե՞ն միայն յանձնեց ընդհանուր եկեղեցւոյն հոգաբարձութիւնը։*

Մեր հակառակորդները չունենալով իրենց ձեռքը զօրաւոր փաստ մը հայոց եկեղեցին հերձուածող վճռելու, ի վերջին ճիգն ապաստան եղեր կըսեն, թէ հայերը սուրբ Աթոռը չեն ճանչեր, եւ փափին հնազանդ չեն, վասն որոյ հերձուածող եւ հերետիկոս են։

Սուրբ Աթոռ ըսելով՝ թէ որ կիմանան առ փափական աթոռը, ուր կը նըստի փափը, չը գիտեմ. ահա անոր ալ ես ամէն

եպիսկոպոսական եկեղեցիները աթոռներ շատ կան․ անոնք ․չեն ճանաչեր ըսել չի վայլեր։ Իսկ թէ որ սուրբ աթոռ ըսելով կիմանան զիշխանը կամ զմասնաւոր եկեղեցին Հռովմայու, զանի կը ճանչնայ Հայոց եկեղեցին այնպիսի ճանաչմամբ, ինչպէս ճանչցերեն իրեն սուրբ նախնիքը․ վասն զի կը ճանաչէ զՀռովմայ եկեղեցին՝ մասնաւոր սուրբ եկեղեցի Քրիստոսի․ եւ կը ճանաչէ զպապն՝ Սրբազան հայրապետ նոյն եկեղեցւոյ։ Այնպէս կը ճանաչէ զՅունաց եկեղեցին՝ մասնաւոր սուրբ եկեղեցի Քըրիստոսի․ եւ զՊատրիարքն Յունաց՝ Սրբազան հայրապետ նոյն եկեղեցւոյ։

Ըստ այսմ կը ճանաչէ եւ զինքն՝ մասնաւոր սուրբ եկեղեցի Քրիստոսի․ եւ զԿաթողիկոսն Էջմիածնի՝ Սրբազան հայրապետ նոյն եկեղեցւոյ։ Իսկ ասոնց, այսինքն ուղղափառ հաւատացելոց բազմութեան մէկ տեղ հաւաքումը՝ որ կըսվի Տիեզերական սուրբ ժողով, զանի կը ճանաչէ ընդհանուր եկեղեցի Քրիստոսի․ ուր Գահերէց կը նըստին Եպիսկոպոսք, իւրաքանչիւրը ըստ իւրեանց կարգին եւ ըստ սահմանադրութեան սուրբ ժողովոց։ Ահա այս է Հայոց եկեղեցւոյն ճանաչումը, որով չի կրնար ըսուիլ ոչ հերձուածող եւ ոչ հերետիկոս։

Բայց մեր հակառակորդները առով չեն բաւականանար, այլ կը պահանջեն, որ ըսենք կամ ճանաչենք, թէ Քրիստոս միայն Պապին տուաւ բացարձակ եւ անսխալ իշխանութիւն ամենայն Քրիստոնէից վրայ, եւ իրեն միայն տուաւ ընդհանուր Եկեղեցին հովուելը։

Այս կերպ խոստովանութիւնը՝ որ Գօլէճցիք կը պահանջեն; տասն եւ մէկ Առաքելոց մշտնջենաւոր իշխանութիւնը կը դադրեցընէ. Կաթողիկէ եկեղեցւոյ ծայրագոյն իշխանութիւնը կը փճացընէ, եւ հռովմայի ծառայ եւ հպատակ կը կացուցանէ. Նաեւ ամենայն ազգաց Եպիսկոպոսները եւ Պատրիարքները իրենց հովուական պաշտօնէն՝ եւ իրաւաբանութենէն՝ եւ վիճակէն 'ի բաց կը հանէ. Տիեզերական ժողովոց սահմանները կը փճացընէ. Առաքելոց անտի մինչեւ հիմա սուրբ Եկեղեցւոյ սովորութիւնը կ՚աւրէ եւ կը խանգարէ, եւ ամենայն ազգ եւ ժողովուրդները իրենց յատուկ Պատրիարքին եւ Կաթուղիկոսին անհնազանդ եւ ապստամբ կընէ՝ ինչպէս ըրեր է մեր համազգիները։

Յայտնի է սուրբ Աւետարանէն, որ Քրիստոս տէրն մեր՝ իր չարչարանքէն եւ մահուանէն յառաջ երբ հարցուց Առաքելոցն, թէ դուք ինչ կը ճանաչէք զիս.

Պետրոս առաքեալը ամէնուն բերնովը պատասխանեց, թէ «Դուն ես Քրիստոս որդի Աստուծոյ»։ Ան ատենը ըսաւ Քրիստոս. «դուն ես վէմ, եւ ՚ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն» այսինքն զեկեղեցին։ Եւ այս խոստացաւ (վասն ըրաւ) ՚ի դէմս Պետրոսի ամենայն Առաքելոց տալ զքանալին արքայութեան, որ է իշխանութիւնն կապելոյ եւ արձակելոյ, ինչպէս Մատթէոս Աւետարանիչը կը գրէ։

Եւ ինչպէս յառաջ խոստացերէր նէ, տուաւ զայն ամենայն Առաքելոց յետ յարութեանն իւրոյ փչելովը, ինչպէս կը գրէ Յօհաննէս աւետարանիչ. «փչեաց Յիսուս յառաքեալսն եւ ասէ. եթէ ումեք թողուցուք զմեղս, թողեալ լիցի. եւ եթէ զուրուք ունիցիք, կալեալ լիցի»։

Իսկ թէ այս խոստացեալ արքայութեան փականքը՝ արդեօք կապելոյ եւ արձակելոյ իշխանութիւնն է՝ թէ ուրիշ բան է, յայտնի է Քրիստոսի խօսքէն՝ որ կըսէ. «Եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից։ եւ զոր միանգամ կապեսցես յերկրի, եղիցի կապեալ յերկինս. եւ զոր արձակեսցես յերկրի, եղիցի արձակեալ յերկինս»։

Եւ թէ այս փականքը Քրիստոս տէրն մեր 'ի դէմս Պետրոսի ամենայն առաքելոց խոստացաւ. տալ. թէ ոչ. յայտնի կը վկայէ Սուրբ Յօհաննէս Աւետարանիչը, թէ յետ յարութեան՝ «փչեաց Յիսուս յառաքելսն, եւ ասէ, առէք հոգի սուրբ. եթէ ումեք թողուցուք, թողեալ լիցի, եւ այլն»

Նաեւ յիրաւի յԱռաքելոց անտի մինչեւ ցայսօր ընդհանրական սուրբ եկեղեցին այս փականքը ունի, եւ 'ի գործ կը դնէ. անզեղջ եւ յամառ մեղաւորին եւ հերետիկոսին դէմ՝ երկնից դուռը կը գոցէ կապանք դնելով եւ բանադրելով. եւ զղջացեալ մեղաւորին եւ ուղղափառութիւն ընդունողին կը բանայ արձակում եւ թողութիւն տալով: Այս ոչ թէ հակառակորդաց կարծին պէս միայն Պետրոսի եւ յաջորդաց նորա տուաւ Քրիստոս այս փականքը, այլ ամենայն Առաքելոց եւ յաջորդաց նոցա, եւ այնպէս ընդհանրական եկեղեցւոյն Քրիստոսի: Ուստի կըսէ սուրբն Աւգոստինոս, «Փականքն ոչ տուան նմա միայնակ (այսինքն Պետրոսի), այլ միութեանն եկեղեցւոյն»:

Թող. հիմա Պարսաւագրքերուն հեղինակները բանան իրենց հոգւոյ աչքերնին, եւ աղէկ միտք դնեն Աւետարանական խօս-

քերուն , որոնց վրայ կախվեր է մեր բոլոր հաւատոյ ուղղութիւնները։

Արդ պէտք է գիտնալ, որ ընդհանրական եկեղեցին Քրիստոսի՝ կամ ընդհանուր տիեզերական ժողովը՝ որ զնոյն եկեղեցին յանդիման կը կացուցանէ, հռոմայու փափէն շատ վեր է. եւ անոր վճիռները եւ սահմանները հռոմայու վճիռներէն շատ զօրաւոր են. վասն զի փափերն ալ պարտաւոր են հնազանդիլ ընդհանուր ժողովոց սահմանադրութեանց։

Ա. Կեղեստիանոս փափը 'ի Ե դարուն Լիւրիկեցւոց եպիսկոպոսներուն կը գրէ, թէ "մեք ամենեքեան պարտաւոր եմք պահել հանդերձ ամենայն զգուշութեամբ զկանոնս, եւ ոչ իշխել 'ի վերայ նոյն կանոնաց. որովհետեւ պարտական եմք անխախտ պահել զհրամանս այնոցիկ ժողովոց"։

Ա. Գելասիոս փափ 'ի Ե դարուն 'ի ժգ թուղթն առ եպիսկոպոսունս Տառտանիայի կը գրէ, "Աթոռն հռովմայ ոչ պակաս քան զայլսն պարտաւորի առնել, որ ինչ սահմանեցաւ 'ի ժողովոց, եւ յընդհանուր եկեղեցւոյ հաստատեցաւ"։

Ա. Ագապետոս փափ 'ի Զ դարուն առ Կեսարիոս եպիսկոպոս Արլետոսի կը գրէ, "հարկ է մեզ պահպանել անփոփոխ զայն

ամենայն, որ ինչ յիշխանութենէ ժողովոցն սահմանեցան”:

Ա. Մարտինոս փափ 'ի Է դարուն կը գրէ, “մեք՝ ճշմարիտ պահապանք եւ ըստոյգ վերակացուք եմք ուղղափառ կանոնացըն, եւ ոչ Թիւրութեամբ եւ չարաչար կերպիւ արհամարհողք եւ առ ոտն հարկանողք· այնոցիկ կանոնաց. վասն զի գիտեմք, թէ որք զայսպիսան առնեն, ընդունելոց են զպատիժ ըստ արժանեաց իւրեանց”:

Գ. Ինովկենտիոս փափ 'ի վախճան ԺԲ դարուն՝ Գաղղիոյ Փիլիպպոս Օգոստոս Թագաւորին կը գրէ, “ոչ երբէք կարեմ համարձակիլ յառնուլ իշխանութեամբ իմով առանց կամաց եւ վճռոյ Տիեզերական ժողովոյ խոտել զկանոնսն, որք յառաջագոյն սահմանեցան”:

Կան այլ եւս շատ վկայութիւններ, բայց չերկարենք խօսքերնիս. Այսքան փափերուն իրենց վկայութիւններէն յայտնի կերեւայ, որ իրենք իսկ փափերը չունին իշխանութիւն ըստ հաճոյից իւրեանց վճիռ կտրել ո՛ եւ իցէ խնդրոյ համար. եւ ընդ պատժով հերետիկոսութեան պարտաւորել զամէնքը ընդունելու համար: Նաեւ թէ իրենք իսկ պարտական են հնա-

զանդիլ Տիեզերական եկեղեցւոյ՝ ընդհա-
նուր ժողովոց կանոններուն. անանկ որ՝ թէ
որ փափքը իրեն կարօտեալներովը մէկ տեղ
վճիռ կուտէ՝ ինչ խնդիր ըլլայ նէ. թող ըլ-
լայ՝ միայն իրեն կամեցողութեամբը ար-
տաքոյ կանոնական սահմանաց տիեզերա-
կան ժողովոց, կը սխալի. եւ ընդհանուր ժո-
ղովոց դատաստանին տակը կիյնայ։

Այս մեր բանձներուն ճշմարիտ. եւ բա-
տոյգ ըլլալը թէ որ կուզէ մէկը հասկը-
նալ, կրնայ աղէկ իմանալ ՚ի սահմանադ-
րութենէն Տիեզերական ժողովոյն Կոստան-
դեայ, որ եղաւ յամի Տեառն 1415 ընդ-
դէմ Վիքլէֆոսի եւ Յօհաննու Հուս կոչե-
ցելոյ։ Նոյն Գ. գումարման մէջ սահմա-
նեցաւ այսպէս, «Այս սուրբ Ժողովս Կոս-
«տանդեայ... հոգւով սրբով գումարեալ
«օրինաւորապէս, արարեալ ժողով ընդհանուր,
«եւ յանդիման առնելով զկաթողիկէ ե-
«կեղեցին զինուորեալ, անմիջապէս ՚ի Քրի-
«ստոսէ ունի իշխանութիւն. որում իւ-
«րաքանչիւր ոք յինչ եւ իցէ աստիճանի
«եւ արժանապատուութեան եւս եւ որ ՚ի
«ՊԱՊԱԿԱՆՆ իցէ, պարտաւորի հնա-
«զանդիլ յայնս՝ որք վերաբերին առ հա-
«ւատս»։

Եւ ՚ի 5 Գումարման սահմանեցաւ այս-

պէս ; «իւրաքանչիւր ոք յինչ եւ իցէ վի-
«ճակի եւ արժանապատուութեան՝ եւս
«եւ ԳԱՊԱԿԱՆԻ՛Ն իցէ հասեալ, որ հը-
«րամանաց՝ կացուցմանց՝ կամ կարգա-
«ւորմանց կամ պատուիրանաց այսր սուրբ
«Ժողովոյ, եւ ո՛ եւ իցէ այլ ընդհանուր Ժո-
«ղովոյ օրինօք գումարելոյ 'ի վերայ այնո-
«ցիկ՝ որք յառաջ տուցան, կամ վերաբե-
«րելոց առ նոսա ; 'ի վերայ այնոցիկ՝ զորս
«արարեալ իցէ, կամ զորս ունի առնել,
«յամառութեամբ արհամարհեսցէ հնա-
«զանդիլ. եթէ ոչ զգաստասցի, ներքոյ
«անկցի ըստ արժանեաց ապաշխարու-
«թեան, եւ ըստ պատշաճի պատուհասես-
«ցի, որ սահմանեալ է յօրինաց»:

Այս սահմանադրութեանը վրայ Բ յու-
լիոս փափը կըսէ թէ, «Արդ այս ճշմար-
«տութիւնս է աներկբայ, եւ ամենայն ուղ
«ղափառք պարտաւորին խոստովանիլ ըզ-
«սա. եւ ո՛վ որ համարձակի ուրանալ զսա,
«փաղփազակի թուակից լինի հերետիկո-
«սաց. եւ չէ պարտ զարմանալ. զի նա սա՛
«հերետիկոս, որ յանդգնի ներհակել իշ-
«խանութեան եւ զօրութեան մեծ տիե-
«զերական Ժողովոյ»:

Ո այս ճշմարտութիւնը՝ որ կը քարոզեն
Տիեզերական Ժողովք եւ հայրապետաց Հը-

ուսմայ, կը սորվեցընէ մեզի նաեւ Քրիս-
տոս Տէրն մեր իւր կենարար վարդապետ-
ութեան մէջը, եւ կըսէ, «Եթէ մեղիցէ
եղբայր քո, երթ յանդիմանեա զնա, յոր-
ժամ դու եւ նա միայն իցէք»: Այսով յայտ-
նի կընէ եպիսկոպոսին իշխանութիւնը յան-
ցաւորին վրայ ինչ եւ իցէ կերպիւ, թէ 'ի
հաւատս ըլլայ եւ թէ 'ի բարի վարս:
Կը կրկնէ ետքը, «Ապա թէ ոչ լուիցէ
քեզ, առ ընդ քեզ միւս եւս կամ երկուս»:
Այսով ալ կիմացընէ եպիսկոպոսին բացար-
ձակ իշխանութիւնը, որ ունի իրեն վիճա-
կին կամ ազգին վրայ: Ետքը կը ծանուցա-
նէ վերջին բացորոշութիւնը՝ ըսելով, «Իսկ
եթէ նոցա ոչ լուիցէ, ասասջիր եկեղեց-
ւոյն»: Ահա աս խօսքով կը ծանուցանէ ընդ-
հանուր եկեղեցին կամ տիեզերական ժո-
ղովը: Սան որոյ եռեւէն կը յարէ այն
սարսափելի խօսքը, «Ապա թէ եւ եկե-
ղեցւոյն ոչ լուիցէ, եղիցի քեզ իբրեւ ըզ-
հեթանոսս եւ իբրեւ զմաքսաւորս»:

Կը տեսնա՞ս, թէ ինչպէս ծայրագոյն եւ
լիակատար իշխանութիւն տուաւ Քրիս-
տոս ընդհանուր եկեղեցւոյ կամ ընդհանուր
ժողովոյ, եւ վերադաս սեպեց գաւառա-
կան եւ ազգային ժողովներէն աւելի. ու-
րեմն եւ հռոմայ սուրբ ժողովն ալ կը պար-

տաւորի հնազանդիլ սահմանադրութեանց ընդհանրական եկեղեցւոյ, ինչպէս ցոյց տուինք 'ի վերոյ։

Յայտնի է եւ այս 'ի սովորութենէ եկեղեցւոյ, որ թէ Առաքելոց օրերը՝ եւ թէ Նախնի հայրապետաց օրերը՝ միշտ ընդհանրական ժողովը ազգային ժողովէն վերադաս կը դնէին։ Առաքեալն Պետրոս երբ կամեցաւ արժանաւոր մէկը ընտրել մատնիչ Յուդային տեղը, ինքիրմէն չըրաւ, հապա Առաքելոց ժողովին մէջը ընտրեց, ինչպէս կը գրէ Ղուկաս Աւետարանիչ 'ի գործս առաքելոց, “Յաւուրսն յայնոսիկ “յարուցեալ Պետրոս 'ի մէջ եղբարցն՝ ա-“սէ, եւ էր անդ բազմութիւն անուանց “իբրեւ հարիւր եւ քսանից . . . եւ կա-“ցուցին երկուս . . . եւ ետուն վիճակս նո-“ցա, եւ ելանէր վիճակն Մատաթիայ, եւ “համարեցաւ ընդ մետասան Առաքեալսն”։

Նոյնպէս երբ կամեցան Առաքեալները որբերուն եւ այրիներուն հոգաբարձու դընել, ամէնքը մէկ տեղ ընդհանրական ժողով ըրին, եւ այնպէս ընտրեցին, ինչպէս կը գրէ նոյն Աւետարանիչը. “Կոչեցին երկո-“տասանքն զբազմութիւն աշակերտացն եւ “ասեն, ոչ է հաճոյ մեզ թողուլ զբանն “Աստուծոյ եւ պաշտել զսեղանս . . . եւ

«Հաճոյ թուեցաւ բանն առաջի ամենայն
«բազմութեանն, եւ ընտրեցին (զարս եօ-
«թըն), զորս կացուցին առաջի առաքելոց.
«Եւ աղօթս արարեալ եդին 'ի վերայ նո-
«ցա զձեռս»:

Նոյնպէս երբ մովսիսական օրինաց եւ թլփատութեան վրայ խնդիր եղաւ, Առաքեալները ընդհանրական ժողով ըրին, եւ այնպէս վճիռ կտրեցին. ինչպէս կը գրէ նոյն Աւետարանիչը. «Յարեան ոմանք 'ի
«հերձուածոյն փարիսեցւոց հաւատաց-
«եալք, եւ ասեն, թէ պարտ է թլփատել
«զդոսա, եւ պատուիրել պահել զօրէնսն
«մովսիսի. եւ ժողովեցան Առաքեալքն եւ
«երիցունք տեսանել վասն բանիս այսորիկ.
«Եւ յետ բազում խնդիր լինելոյ՝ յոտն ե-
«կաց Պետրոս, եւ ասէ ցնոսա, արք եղ-
«բարք՝ ընդէ՞ր փորձէք զԱստուած դնել
«լուծ 'ի վերայ պարանոցի աշակերտացն
«....Պատասխանի ետ եւ Յակոբոս, եւ
«ասէ, Շմաւոն պատմեաց...վասն որոյ եւ
«ես իրաւունս համարիմ մի նեղել զայնո-
«սիկ՝ որք 'ի հեթանոսաց դառնան առ
«Աստուած... յայնժամ հաճոյ թուեցաւ
«Առաքելոցն եւ երիցանցն ամենայն եկե-
«ղեցեաւն»: Եւ ժողովոյն վճիռը թղթով ծանուցին այսպէս. «Հաճոյ թուեցաւ Հոգ-

ւոյն սրբոյ եւ մեզ". վասն զի քաջ գիտէ-ին, թէ Հոգւոյն սրբոյ ներկայութիւնը կրնէ զեկեղեցին անսխալ. իսկ զայն Հոգին սուրբ՝ Քրիստոս չտուաւ միայն Պետրոսի՝ 'ի բաց զատուցեալ 'ի միւս առաքելոց. այլ ամենայն առաքելոց տուաւ ըսելով, "առէք հոգի սուրբ": Նա Պէնտէկոստէին օրը Հոգին սուրբ հրեղէն լեզուօք եկեալ "նստաւ իւրաքանչիւր 'ի վերայ նոցա, եւ լցան ամենեքեան հոգւով սրբով". ինչպէս գրուած է 'ի գործս առաքելոց:

Քանզի՝ "Հոգին սուրբ է, որ ոչ թողու անկանիլ 'ի սխալումն եւ 'ի ստութիւն. զի հոգի ճշմարտութեան է". եւ ահա այն Հոգին տուաւ ամենայն առաքելոց եւ անոնց յաջորդներուն այսինքն ընդհանուր եկեղեցւոյ՝ Պէնտէկոստէին օրը, ինչպէս յառաջուց խոստացեր էր Քրիստոս. "Աղաչեցից զՀայր, եւ այլ Մխիթարիչ տացէ "ձեզ, զի ընդ ձեզ բնակեսցի 'ի յաւիտեան, եւ յիշեցուսցէ ձեզ զամենայն, զոր "ես ասացի ձեզ":

Աս ըսածներէս յայտնի եղաւ, թէ միայն Պետրոս Առաքելոյն չէ յանձնուած եկեղեցւոյն հոգաբարձութիւնը, այլ ամենայն առաքեալներուն եւ եկեղեցւոյ հովիւներուն: Նաեւ Քրիստոս, "երթայք

"յաշխարհ ամենայն, քարոզեցէք զաւե-
"տարանն ամենայն արարածոց. ուսուցէք
"նոցա պահել զամենայն, զոր ինչ պատ-
"ուիրեցի ձեզ". եւ թէ՝ "որպէս առաք-
"եաց զիս Հայր, եւ ես առաքեմ զձեզ".
եւ թէ՝ "որ ձեզ լսէ, ինձ լսէ"։ Չըսաւ
Քրիստոս, "թէ՝ որ քեզ լսէ Պետրոս, այլ
թէ՝ որ ձեզ լսէ, այսինքն՝ ձեզ ամենայն
առաքելոց իմոց՝ եւ յաջորդաց ձերոց
հովուաց եկեղեցւոյ։

Աւտի կըսէ Սուրբն Կիպրիանոս 'ի
թուղթն առ Բիբիանոս, "Ասաց Առաքե-
"լոցն եւ 'ի ձեռն նոցա ամենայն առաջա-
"կայիցն, որք առաքելոցն փոխանակաւ-
"կարգեալք յաջորդեցին, որ ձեզ լսէ, ինձ
"լսէ"։ Աւրեմն ոչ միայն Պետրոսի, այլ
եւ ամենայն առաքեալներուն յանձնեց
Տէրը իր եկեղեցւոյն հոգաբարձութիւնը։

Կը վկայէ ինքը Սուրբ Պետրոս առաք-
եալն ալ, "զերիցունս աղաչեմ իբրեւ զերի-
ցակից . . . արածեցէք որ 'ի ձեզ հօտդ է
Աստուծոյ". եւ թէ՝ "զգոյշ լերուք ան-
"ձանց եւ ամենայն հօտին. յորում եդ
"զձեզ Հոգին Սուրբ տեսուչս հովուել ըզ-
"ժողովուրդ տեառն"։

Կը գրէ եւ Հերոնիմոս Աստուածաբան
'ի թուղթն առ Եւագր, "եթէ զիշխանու-

«Թէնէն խնդրես , մեծ է տիեզերս քան «զքաղաքն . վասն էր յառաջ բերես ինձ «զսովորութիւն միոյ քաղաքի , ուր եւ «գտցի եպիսկոպոս, եթէ 'ի Հռոմ, եթէ 'ի «Կոստանդնուպօլիս , եթէ յԱղէքսանդ- «րիա, եթէ 'ի Հռեգիոն, եւ եթէ 'ի Տա- «նիս , զնոյն արժանապատուութիւն եւ «զնոյն քահանայութիւն ունին» . ասանկ կը գրէ Սրբազան վարդապետը եկեղեցւոյ։ Վասն զի ամէն ազգի հայրապետ իր ազգին հրամայել , եւ ամէն ազգ իր հայրապետին իշխանութեան տակը ըլլալը՝ սուրբ եւ ընդհանրական ժողովոց սահմանն է . զի եթէ տասն եւ մէկ առաքելոց հօվուական իշխանութիւնը փճացաւ եւ իրենց յաջորդներուն չանցաւ նէ , ապա Պետրոսի հօվուական իշխանութիւնը եւս փճացաւ։ եւ իրեն յաջորդին չանցաւ։

Իսկ եթէ Պետրոսի յաջորդը՝ իր նախաթոռ Առաքելոյն իշխանութիւնը ունի, ուրեմն տասն եւ մէկ Առաքելոց յաջորդներն ալ՝ իրենց նախաթոռ Առաքելոց իշխանութիւնը ունին . վասն զի ամենեցուն միապէս ըսաւ Քրիստոս, «ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչեւ 'ի կատարած աշխարհի» . եւ թէ «հոգին ճշմարտութեան ընդ ձեզ բնակեսցի , եւ ընդ ձեզ

եղիցի 'ի յաւիտեան» . Այսպէս հաստատեցին առաջին սուրբ ժողովք։

Նոյն բան այսօրինակ վկայութեանց՝ Հայոց Սուրբ եկեղեցին ունի զնոյն իշխանութիւնն հովուելու իւր հօտը՝ ըստ սահմանադրութեան աւետարանական ժողովոց, եւ կը հաւատայ 'ի մի, սուրբ, կաթողիկէ, եւ առաքելական եկեղեցին, եւ կը ճանաչէ զՀայրապետն հռովմայ՝ ոչ Գոլէճցւոց ըստ ծին պէս իբրեւ բացարձակ Տէր եւ միահեծան հրամանատու ընդհանուր եկեղեցւոյ՝ բացառութեամբ ամենայն եպիսկոպոսաց եւ եպիսկոպոսապետաց, այլ իբրեւ Առաջին եւ գլխաւոր 'ի մէջ Պատրիարքական աթոռոց՝ պարառութեամբ ամենայն եպիսկոպոսաց եւ եպիսկոպոսապետաց։

Ուստի չունի Կաթողիկէ եկեղեցւոյն վրայ տիրապետելու հեղինակութիւն մը, այլ թէ ինքը անոր տակը կը կենայ, եւ անոր կանոններովը կը կառավարուի. իրեն յատուկ վըճիռները առանց հաւանութեան ընդհանուր եկեղեցւոյ ընդունելի չեն. կրնայ սըխալիլ այն վճիռներուն մէջ, որ մասնաւոր անձանց կամ մասնաւոր եկեղեցեաց կը վերաբերին, ինչպէս կը ցուցընեն Աստուածաբանները։

Ուստի յայտ է թէ՝ ընդհանրական ե-

եկեղեցին կամ տիեզերական ժողովն է ան-
սխալ միշտ · իսկ այլ ամենայն մասնաւոր
եկեղեցիք՝ թէ Հռովմայ, թէ Անտիոքայ,
թէ Երուսաղէմի, թէ Կոստանդնուպոլսի,
թէ Հայաստանի, եւ թէ այլ ուղղափառ
ազգաց քրիստոնէից, յատուկ եւ ըստ ինք-
եան մնացեալ՝ կրնան սխալիլ · իսկ միան-
գամայն եւ հաւաքապէս առեալ՝ չեն կըր-
նար սխալիլ ըստ անսուտ վճռոյն Քրիստո-
սի, թէ "դրունք դժոխոց զնա մի յաղ-
թահարեսցեն"։

Սակայն գիտնալով Պետրոս Առաքեալը՝
ընդհանուր Քրիստոնէից վերաբերեալ որ-
նօրէնութիւնը ընդհանուր ժողովոյն Առա-
քելոց կառավարկէր, որ միաբան հաւա-
նութեամբ վճիռ կուտեն։ Սոյնպէս հռով-
մայու Հայրապետներն ալ՝ կըլլար որ ի-
րենց մասնաւոր ժողովքով աղանդ մը կը
դատապարտէին, և այն բաւական չէին հա-
մարէր, ընդհանուր ժողովոյ կառավարէին,
ուր տեղ այն բանը նորէն քննըլլի, եւ այն-
պէս հաստատուի։

Լիպերիոս փափը՝ որ նստաւ յամի 352,
եւ անկէց ետեւ Դամասոս փափը՝ իրենց
յատուկ ժողովքներուն մէջը Մակեդոնի
աղանդը դատապարտեցին · բայց նոյն ա-
ղանդը նորոգ քննութեամբ դատապարտ

ցաւ Կոստանդնուպոլսոյ Բ. տիեզերական ժողովոյն մէջը։

Ս. Կելեստինոս փափը Հռովմայու ժողովքին մէջը Նեստորի աղանդը հերքեց, եւ նոյն աղանդը նորէն դատապարտեցաւ Եփեսոսի ընդհանուր ժողովոյն մէջը։

Փելիքս փափը դատապարտեց զՊետրոս անտիոքացին իբրեւ հերետիկոս, նոյնն կըրկին դատապարտեցաւ ՚ի հինգերորդ տիեզերական ժողովն Կոստանդնուպոլսի։

Վասն զի միայն Հռովմայ փափին վճիռները թէ որ հարկաւորապէս անսխալ ըլլար ամէն ժամանակ, եւ առանց հաւանութեան ընդհանուր եկեղեցւոյն կատարելապէս ընդունելի ըլլար նէ, ի՞նչ պէտք էր ընդհանրական ժողովներ ընելու. ուրեմն փուճ տեղը այն տիեզերական ժողովները եղեր են ատեն ատեն այնքան աշխատութիւն կրելով, հեռաւոր աշխարհքներէ մէկ տեղ գալով, իրենց հօտը եւ աթոռնին պարապ ձգելով, և այլն։

Նաեւ Եպիսկոպոսները՝ Կաթուղիկոսները՝ Պատրիարքները՝ թէ որ Հռոմայի փափէն կախումն ունին, եւ անոր յատուկ իշխանութեանը տակն են, եւ անոր յամենայնի հնազանդիլ կը պարտաւորին, եւ իրենք չեն բացարձակ հովիւ եւ առաջնորդ

եւ դատաւոր իւրաքանչիւր եկեղեցւոյ, եւ չունին իրաւաբանութիւն եւ ազատ իշխանութիւն վճռելոյ՝ սահմանելոյ՝ եւ բացորոշելոյ, ինչու համար ընդհանուր ժողովներուն մէջը վճիռ կը կտրէին, սահման կը դնէին, հաստատութիւն կուտային, եւ ստորագրած ատեննին այսպէս կը գրէին.

«Ես այս անուն եպիսկոպոս սահմանեալ՝ ստորագրեցի» կամ «Ես այս անուն եպիսկոպոս հաստատեալ ստորագրեցի»։ Հապա պէտք էր որ ասանկ ստորագրէին, «Ես այս անուն եպիսկոպոս հռոմայի փապին վճռոյն հաւանեալ ստորագրեցի». կամ. Ես այս անուն եպիսկոպոս՝ հռոմայի փապին վճռոյն հնազանդեալ ստորագրեցի»։ Կը վկայէ եւ Սուրբն Օգոստինոս, «Ես ոչ հաւատայի սուրբ գրոց, եթէ ոչ էր հաստատեալ այն յեկեղեցւոյ»։ Կը վըկայէ Հայերս Աստուածաբան, «Առ եկեղեցին վերաբերին ընդհանուր. ժողովք, զի զօրավանդակ եկեղեցին յանդիման առնեն. եւ վճիռ [illegible], յորժամ հաւանութիւն եկեղեցւոյ 'ի վերայ գայ»։

Մեր Թողունք եւ Գաղղիական եկեղեցւոյն յայտարարութիւնը, որ ըրաւ 168.2 այսպէս, «վճիռք պապին յայնժամ ոչ նորոգին, յորժամ հաստատեալ է հաւանու-

Թեամբ ընդհանուր եկեղեցւոյ։

Նոյն բանձներէն կը հետեւի որ փափին յատուկ վճիռը՝ որ միայն իր կարդինալներովն է ըրեր, թէ որ չընդունող ըլլան, ու բաւական պատճառ ցոյց տալով հրաժարին նէ, հերետիկոս չեն սեպվիր. վասն զի շատ հռոմայու փափեր իրենց կարդինալներովը վճիռներ հանեցին, եւ անոնց ետեւէն եկող փափերը այն վճիռները չընդունեցան, ուրեմն այն փափերը հերետիկոս եղան։

Ը. Բոնիփակիոս փափը իր կարդինալներովը շատ կանոններ եւ վճիռներ սահմանեց, որ կըսվի Տէքսդէ. բայց Ե. Կղեմէս փափը այն վճիռները չընդունեց, այլ եւ յամին 1311 Թուղթ հանեց, եւ զԲոնիփակիոս փափը իբրեւ հերետիկոս դատապարտեց։

Ա. Կղեմէս պապը՝ որ նստաւ յամի տեառն 67, վճռով հաստատեց, թէ Գըրբոշմին խորհուրդը Մկրտութեան հետ տըրվի, ինչպէս կընէ Հայոց եկեղեցին։

Որմիզդէս պապը վճռով հաստատեց, թէ 'ի հաղորդութեան Պատարագին՝ Սըրբազան Հացէն եւ Բաժակէն ժողովրդեանը տըրվի, ինչպէս կընէ Հայոց եկեղեցին։

Թ. Գրիգոր պապը Վիկորնիոյ ժողովոյն

սահմանադրութեանը պէս ինքն ալ վճռով հաստատեց, թէ 'ի Մկրտութեան երեք ընկղմումն ըլլայ, որ մինչեւ 'ի ժէ դարն ալ այնպէս կընէին, եւ անանկ կընէ Հայոց եկեղեցին։

Հոս կան սաանկ ո եւ իցէ խնդրոյ համար վճիռներ՝ Հռոմայի աթոռէն իրեն կարդինալներուն հաւանութեամբը եղած հաստատուած. բայց հիմա նոյն Հռոմայի եկեղեցին այս վճիռներուն չի հնազանդիր եւ ոչ բնաւ 'ի գործ կը դնէ կոր, ուրեմն մեր հակառակորդ Աստուածաբաններուն նայինք նէ, այժմեան Հռոմայի եկեղեցին անհնազանդ եւ հերետիկոս կը սեպուի։

Աստուածաբանները կըսեն թէ՝ Հռոմայի աթոռը իր կարդինալներովը խնդրոյ մը վրայ վճիռ կտրէ. թէ որ Սպանիօլք կամ Ֆրանսըզք կամ Նեմցէք կամ Լէհք՝ եւ կամ ո՛ր եւ իցէ Եւրոպացի Քրիստոնեայք՝ որ փափին յատուկ Պատրիարքութեան տակն են, այն վճիռը իրենց տեղւոյն կամ ժամանակին կամ վիճակին՝ եւ կամ քաղաքական կացութեանը չի յարմարելուն՝ բան բաւական ունենան եւ չընդունին նէ, հերետիկոս կամ հերձուածող չեն սեպուիր. այլ ընդ հակառակն՝ ժողովոց սահմանները պահելովնին՝ տակաւին ճշմա-

րին հաւատացեալ եւ ուղղափառ կը սեպվին։ Ահա Գաղղիացւոց եկեղեցին Տրիտենդեան ժողովոյն շատ սահմանները մինչեւ այսօրս ընդունած չեն, բայց հերետիկոս չեղան. եւ Հռոմայի աթոռը ուղղափառ կը սեպէ զեկեղեցին Գաղղիացւոց։

Հապա ինչո՞ւ արեւելեան Քրիստոնեայ ազգերը՝ որ փափին յատուկ Պատրիարքութեան տակը չեն, 'ի սկզբանէ անտի իրենց ազգին սեպհական Պատրիարք եւ Կաթուղիկոս՝ արտօնութիւն եւ իրաւասութիւն ունին. թէ որ զայն վճիռները՝ որ յատկապէս Հռոմայու Աթոռը իր կարդինալներովը ըրեր է, իրենց սովորական ծէսին կամ հինուց ունեցած արտօնութեանը՝ կամ քաղաքական վիճակին անյարմար ըլլալուն՝ բան բաւական ունենան եւ չընդունին նէ, հերետիկոս պիտի սեպվին. մի թէ բաւական չէ՞ զիրենք ուղղափառ կացուցանել ընդհանրական ժողովոց հաստատ սահմանները՝ զոր ունին ամբողջ, եւ միշտ հաստատուն կը պահեն։

Ապա ոչ բնաւ հերետիկոս կրնայ սեպվիլ Հայոց եկեղեցին, որ 'ի Սուրբ Լուսաւորչէ անտի Պատրիարքական իշխանութիւն եւ առանձնաշնորհութիւն եւ իրաւունք ունի, նաեւ հաստատուն եւ անփոփոխ կը

պահէ հաւատոյ սահմանները՝ որ 'ի տիե-
զերական ժողովոց ընդհանուր եկեղեցւոյ
աւանդեցաւ։ Ուստի խիստ զարմացման
արժանի է, թէ ի՞նչպէս կը համարձակին,
Գոլէճցիք Հռոմէական Աթոռոյն այնպիսի
հնազանդութիւն եւ ընդունելութիւն պա-
հանջել յո՛ եւ իցէ ազգէ ընդ պարտաւո-
րութեամբ հերետիկոսութեան, որ փափը
այդ հնազանդութիւնը չի պահանջէր ոչ
միայն արեւելեան ազգերէն, այլ նաեւ իր
յատուկ Պատրիարքութեան տակը եղած
ազգերէն։

Ահա ասոնք են, որ պարզամիտ ժողո-
վուրդը կը գայթակղեցընեն, եւ սուրբ ե-
կեղեցւոյ անդամները՝ որ մէկ հաւատք
եւ մէկ սրբարար խորհուրդ ունին, իրարմէ
կը փեռեկտեն, եւ իրարու թշնամի կընեն.
մի և նոյն ազգի մէջ՝ եւ մի եւ նոյն տան
մէջ՝ եղբարց եւ մերձաւորաց եւ ազգա-
կանաց մէջ՝ եւս եւ 'ի մէջ առն եւ կնոջ,
ծնողաց եւ զաւակաց, ծխական բաներ՝
եւ Բեղլարմինոս կարդինալին շողոքորթ խօս-
քերը իբրեւ հաւատոյ մասն առաջարկե-
լով, խռովութիւն եւ բաժանում կը ձգեն,
եւ հոգւոյ եւ մարմնոյ վնաս եւ կորուստ
կը պատճառեն։

Արտաքին թշնամիք ոչ այնքան վնասա-

կար եղած ազգիս՝ որքան ատենք , որ ազգիս եւ եկեղեցւոյս Ջատագով ձեւանալով այնպէս կերեւցընեն , թէ եկեղեցւոյ շինութեանը կաշխատին . բայց իրօք ներհակն է ըրածնին . քակելու ետեւէ են ինկեր . պարզամիտ ժողովուրդներն ալ չեն գիտեր , խօսքով եւ գործքով անոնց օգնութիւն կընեն։

Սուրբ Ներսէս Լամբրոնացիին ըսածին պէս , գործքով ըրածնին՝ որ աստուածատեցութիւն է , կը կարծեն թէ աստուածսիրութիւն է . որոց համար աղէկ է գրեր Պօղոս առաքեալը , "թէ զնախանձն աստուծոյ ունին՝ այլ ոչ գիտութեամբ , զի ագէտ են աստուծոյ արդարութեանն"։

Ոչ միայն ագէտ , այլ եւ խղճմտանք ալ չունին . վասն զի յայտնի հրապարակաւ Սուրբ եկեղեցւոյ դէմ կը մեղանչեն , եւ բնաւ հոգերնին չէ , չեն միտեր անգամ մը՝ որ կամակորութեամբ անարատին արատաւոր կըսեն , ուղղափառին չարափառ կըսեն , բերած պատճառներնին անզօր եւ ոչինչ բաներ են , մանաւանդ թէ սուտ են . եւ սուտը հաստացընելու կը ջանան . մարդեաք ինչ պատասխան պիտի տան յահաւոր ատենին։

Քրիստոս ելլէ իրենց հարցընէ ան ատենը , թէ ես միայն Պետրոսին տուի ե-

կեղեցւոյս հոգաբարձութիւնը եւ կառավարութիւնը, եւ միւս առաքեալներս զըրկեցի՞ այս հոգեւոր իշխանութենէն նէ, ի՞նչ պատասխան պիտի տան։

Աստ զի Միայն բառը դնելով՝ միւս առաքեալները եւ Պատրիարքները եւ Կաթողիկոսները իրենց հովուական իշխանութենէն դուրս կը ձգէ. որ ունին ընդհանուր եկեղեցւոյ մէջ, եւ միայն Պետրոսը եւ անոր յաջորդները կը թողու գլուխ եւ հովիւ կաթողիկէ եկեղեցւոյ. ինչու որ Միայն բառը ան զօրութիւնը եւ ուժը ունի, որ ինչ խօսքի վրայ գրուի, անկից 'ի զատ եղածները դուրս կը հանէ. ինչպէս թէ որ ըսեմ, Միայն Աստուածն է չար. ըսել է թէ՝ բաց 'ի Աստուծմէն չի կայ ուրիշ չար մը։

Ուրեմն այլ է ըսելը, Պետրոս առաքեալն է գլուխ, Պետրոս առաքեալն է հովիւ, եւ այլն. եւ այլ է ըսելը, Միայն Պետրոս առաքեալն է գլուխ, Միայն Պետրոս առաքեալն է հովիւ։

Ոք եթէ Միայն բառը չի դնես նէ, տակաւին ամենայն առաքեալք իրենց վիճակին վրայ ունեցած գլխաւորութիւնը եւ հովուութիւնը հաստատուն պահած կըլլան։ Իսկ եթէ Միայն դնես նէ, բաց 'ի Պետրոսէն այլ ամենայն առաքեալք իրենց

գլխաւորութիւնը եւ հովուութիւնը կորընցուցած կըլլան, որ բոլոր տիեզերքը քարոզեցին Քրիստոսի հաւատքը, շինեցին եկեղեցիներ, ձեռնադրեցին եպիսկոպոսներ, քահանայներ, եւ հովիւներ, Քրիստոսի բանաւոր հօտը հովուելու համար։

Վասն զի հաւատացեալները՝ Քրիստոսի ոչխարները ու գառները են եւ ոչ թէ Պետրոսին. չըսաւ Քրիստոս, արածեա՛ զոչխարս իմ, այլ թէ՝ «արածեա՛ զոչխարս իմ», որոնք ամենայն առաքելոց յանձնեց. եւ առաքելոց ժամանակէն մինչեւ ցայսօր եկեղեցւոյ հովիւները կարածեն Քրիստոսի հօտը։

Ասոր համար կըսէ Սուրբն Կիպրիանոս, «Մի միայն է եկեղեցին ՚ի բազում ան-
«դամս բաժանեալ, եւ մի միայն հովուու-
«թիւն տուեալ բազում հովուաց, որք
«համաձայն են ՚ի վարդապետութիւնս հա-
«ւատոյ»։ Ուրեմն ոչ միայն Պետրոս եւ անոր յաջորդները հովիւ են եկեղեցւոյ՝ ինչպէս կըսեն հակառակորդք. այլ նաեւ ամէն առաքեալներն ալ՝ ու անոնց յաջորդներն ալ, որոնք ՚ի Քրիստոսէ ունին անմիջապէս իրենց իշխանութիւնը ըստ սահմանադրութեան Տիեզերական ժողովոց. որ եւ նոյն ինքն Հռոմայ փափն ալ պարտա-

կան է հնազանդ ըլլալ այն ժողովներուն . եւ թէ յամառի ու չի հնազանդիր նէ՝ ապաշխարութեան ու պատուհասի տակ կիյնայ . սակայն կը վճռեն սուրբ ժողովք։ Վասն զի թէ որ միայն Պետրոս առաքեալը պիտի հովուէր զկաթողիկէ եկեղեցին ; ապա Քրիստոս զուր տեղը միւս առաքեալները ընտրեց , եւ ընդ ամենայն ծագս աշխարհի յուղարկեց։

Նաեւ կերեւնայ , թէ առաջին սուրբ հայրապետները Աւետարան չէին կարդացեր , Քրիստոսի այդ խօսքը չէին գիտեր , որ միայն Պետրոսի տուեր է եկեղեցւոյ բացարձակ եւ անկախ իշխանութիւնը . վասն զի Առաքելոց ժամանակէն մինչեւ ՚ի Նիկիոյ ժողովը որչափ եկեղեցական ժողովներ եղած նէ , Հռոմայի պապին ոչ գիտնալովը էր եւ ոչ հաստատելովը . հապա այլ եւ այլ կողմանց Պատրիարքներ եւ կամ Մետրապօլիտներ մէկ տեղ կը հաւաքուէին , եւ առանձին ժողով կընէին , մոլորութիւնը կը վերցընէին , եւ ուղղափառութիւն կը հաստատէին։ Նաեւ այս ոչ միայն Հռոմայի աթոռին Պատրիարքութենէ դուրս եղած տեղերը կընէին , այլ նաեւ Հռոմայի յատուկ իշխանութեանը տակը եղած երկիրը . ինչպէս Մարկեղինոս փափին օրը Սինոյէսա

ժողով եղաւ , որ այն տեղը Հռոմայի իշխանութեան տակն էր , եւ փափը խապար չունէր։ Ուստի նոյն ժողովներուն մէջն եղող Հայրապետները՝ հակառակորդաց խօսքին նայելով հերետիկոս եղած պիտի ըլլան , որ զփափը չի ճանչցան իրենց ազգին եւ եկեղեցւոյն յատուկ գլուխ , եւ՛ միշտ հնազանդութիւն ցոյց չի տուին Հռոմայ Աթոռոյն։

## ՄԱՍՆ · Գ.

*Արդեօք Հռովմայի փափը կամ սուրբ ժողովքը անսխալ է , եւ անոր վճիռները չընդունողը հերետիկոս եւ հերձուածող է։*

Մարկեղլինոս Պապը սխալեցաւ , որ ձեռքը բուրվառով խունկ մատոյց հելլենացւոց կուռքերուն մեռնելէն վախնալով. վասն որոյ դատապարտեցաւ , երբոր հաստատուեցաւ 72 վկայներով , որ իր երեսին դէմ վկայեցին. Թէպէտ ետքը մարտիրոսութեամբ իւր մեղքը քաւեց , տե՛ս 'ի պատմութիւն փափից։

Լիբերիոս փափը սխալեցաւ , որ Արիոսի մոլորութիւնը ունէր , եւ ստորագրեց Արիոսական հերետիկոսութեան ժողովոյն

Արիմինոյ , եւ Սուրբ Աթանասի դատա-
պարտութեանը՝ Արիանոսաց հետ չը միա-
բանելուն համար . տես Նաեւ՝ ի Պիլուարտ։

Բ . Անաստասիոս փափը սխալեցաւ , որ յայտնի Նեստորի աղանդոյն ջատագովութիւն կընէր , տես ՚ի պատմութիւն փափից։

Անորիոս փափը սխալեցաւ , որ ՚ի Քրիստոս մի միայն կամք կը խոստովանէր . որուն թուղթերը եւ կոնդակները քառասուն տարիէն յետոյ Կոստանդնուպօլսոյ դիւանէն ( Քիւթիւկէն) ելաւ . որ կը պատուիրէր թէ արեւելեան կողմը բնակող քրիստոնեայներուն ալ այսպէս քարոզեն եւ սորվեցընեն , որ ՚ի վեցերորդ Տիեզերական ժողովը՝ այսինքն Կոստանդնուպօլսոյ Գ . ժողովին մէջ յամի 981 , դատապարտեցաւ իբրեւ հերետիկոս , ինչպէս կը գրեն Բելլարմինոս եւ Բարոնիոս կարդինալները . տես Նաեւ ՚ի Պիլուարտ։

ԻԳ . Յովհաննէս փափը սխալեցաւ , որ հազարամենից մոլորութիւնը ունէր , եւ որոց յաւիտենական երանութիւնը կուրանար . տես Նաեւ ՚ի Պիլուարտ։

ԺԲ . Գրիգոր փափը , եւ ԺԳ . Վոնիփակիոս փափը իբրեւ հերետիկոս դատապարտեցան Բիզայի ժողովոյն մէջը յամի 1409 , ուր էին 300 եպիսկոպոսունք . տես ՚ի պատմ-

մոլթիւն փափից։

Ուստի ոչ միայն այս փափերը սխալեցան, այլ նաեւ անոնց կարդինալները՝ որ զանոնք ընտրեցին եւ փափ դրին. ուրեմն Ընդհանուր եկեղեցիէն եւ տիեզերական ժողովէն 'ի զատ ամէն մարդ կրնայ սխալիլ, քահանայ, եպիսկոպոս, կաթողիկոս, պատրիարք, փափ, թէ առանձին եւ թէ իր եկեղեցականներովը։

Ու որովհետեւ Հռովմայու փափից սըխալիլը յայտնի է եկեղեցական պատմութիւններէն եւ Աստուածաբաններուն գրքերէն, որոնք մեր հակառակորդներն ալ չեն կրնար ուրանալ. բայց կարելի է, որ մեր հակառակորդները դառնան ըսեն թէ, այո, այս փափերը սխալեցան ո՛րը մոլորութեամբ գործոյ, եւ ո՛րը մոլորութեամբ հաւատոյ. բայց ոչ իբրեւ փափ սխալեցան, այլ իբրեւ եպիսկոպոս Հռոմայու։

Այս պատասխանը ո՛րչափ ծաղրելի ըլլալը ամէն մտաւոր մարդ կրնայ հասկընալ. վասն զի Երբոր Զոսիմոս փափը սխալեցաւ, եւ հաստատեց Կեղեստիանոսի գիրքը՝ որ Պեղագեան հերետիկոս էր, եւ այն գրքին մէջը յայտնի կուրանար սկզբնական մեղքը. եւ Ափրիկեցւոց եպիսկոպոսներուն թուղթ գրեց, թէ ընդունեցէք զայն գիր-

քը. կը հարցընեմ, թէ արդեօք իբրեւ պա՞պ ըրաւ, թէ իբրեւ եպիսկոպոս Հռոմայու։

Զարմանալին այս է որ՝ երբոր վճիռ կը հանեն, կանոն կը սահմանեն, գործ մը կը հաստատեն, իբրեւ փափ կընեն, եւ գիր կը հանեն, թէ մենք իբրեւ փափ Հռովմայու զայս կամ զայն հաստատեցինք կամ հերքեցինք։ Բայց երբ այն վճիռը կամ հաստատութիւնը ծուռ ելլէ, եւ ետեւի եկող փափը զայն վճիռը հանող փափը դատապարտէ նէ, ինչպէս որ Ինովկենտիոս փափը դատապարտեց Զոսիմոս փափը, այն ժամանակը կեղծուպատիր Գալէճցիները կը դառնան կըսեն թէ, այո, այս ինչ փափը սխալեր է, բայց ոչ իբրեւ փափ, այլ իբրեւ եպիսկոպոս Հռոմայու։

Ահա ասոր համար է՝ որ տգէտ ու խղճահար ժողովուրդները Աստուած կարծեցին զփափը. որովհետեւ ստուգիւ գիտեն, զի Աստուծոյ միայն է անսխալ ըլլալը. եւ ամէն օր ալ ասանկ Գալէճցիները իրենց զրուցելով՝ որ Փափը անսխալ է, մաքուրին խեղճերը անանկ հասկըցեր էին, թէ Հռովմայու Փափը աստուած է. ինչպէս երեսուն երկու տարի յառաջ Պէյօղլու բազմութեան ժողովի մէջ բաղ ալ եղաւ, թէ Հռովմայու փափը աստուած չէ՞ մի։

Բայց տեսնելու զարմանալին այս է որ՝ մինչեւ 1500 Թուականն Քրիստոսի հիչ մէկ քրիստոնեայ մը չէր գիտեր, թէ փափը անսխալ է. նաեւ նոյն առաջին Փափերն ալ չէին գիտեր, թէ իրենք անսխալ են. այլ 300 տարիի չափ ժամանակէ, որ Հըռոմայու պատուաւորները այս խօսքը հանեցին, որ փափին հաճելի ըլլան. ուստի հիմա այս անտանելի, սուտը կառաջարկեն քրիստոնէից հաւատալ Աստուածային հաւատով։

Անոր համար եւ իրենց Աստուածաբանները ալ ուրիշ ճար մը չի գտնալով աս գրութիւնը հաստատելու, Աւետարանէն վկայութիւն մը առած՝ բանի քաշկռտելով կը ջանան, որ օտար մեկնութեամբ աս սուտը հաստատեն. վասն որոյ արժան կը համարիմ հոս համառօտիւ ուղիղ բացատրել Քրիստոսի այն խօսքը, որ ըսաւ Պետրոսի, թէ՝ «ես աղաչեցի վասն քո, զի մի պակասեսցին հաւատք քո»։ Արդէն զի չըլլայ որ՝ պարզամիտ մարդիկ Գոլէճցի շողոքորթներէն խաբուին, եւ այս աւետարանական խօսքը աղէկ չի հասկընալով՝ միայն փափը կամ յատուկ Հռովմայի աթոռը անսխալ կարծեն, որ շատ անգամ սխալեցան. եւ կրնան սխալիլ. ինչ-

պէս փոքր 'ի շատէ յայտնի լինի։

Քրիստոս Տէրն մեր մատնութեան գիշերը ըսաւ թէ՝ «Սիմո՛ն Սիմո՛ն՝ ահա սա«տանայ խնդրեաց զձեզ (այսինքն զմետա«սան առաքեալսդ իմ) խարբալել իբրեւ «ցորեան. այլ ես աղաչեցի վասն քո, զի մի «պակասեսցին հաւատք քո»։ Քրիստոս Տէրը՝ որ չեղած բանը իբրեւ ծածկագէտ Աստուած՝ յառաջուց խապար կուտար, այս փորձանքը՝ որ առաքելոց այն գիշերը պիտի պատահէր, իրենց իմացուց ըսելով, թէ սատանան կուզէ, որ զձեզ ամէնքդ ցորենի պէս մաղը լեցնէ, եւ մաղելով վար թափէ, որ ձեր ունեցած հաւատքէն գայթակղիք եւ վար իյնաք. ինչպէս մատթէոսի աւետարանին. մէջ ալ գրած է Քրիստոսի ըսելը, թէ «ամէնքերնիդ դուք գայթակղելոց էք յինէն յայսմ գիշերիս»։

Եւ որովհետեւ միւս տասը Առաքեալները պիտի գայթակղէին, բայց ուրացութեամբ չէր պիտի իյնային, միայն թէ Պետրոս առաքեալը վար պիտի իյնար զՔրիստոս ուրանալովը. իսկ Քրիստոս անօրինաբար աղօթեց զՀայր Աստուած վասն Պետրոսի, որ բերնով ուրանայ նէ, հաւատքը սրտէն չի ղալկի Յուդա մատնիչին պէս [illegible] թէպէտ. Պետրոս Առաքեալը ու-

րացաւ, բայց առ արտաքս միայն էր․ Քրիստոսի աղաչանացը համար 'ի սրտէն Նոյն հաւատքը չի պակսեցաւ, որ 'ի յայտնութենէն Հօր Աստուծոյ դաւանեց, «Թէ դու ես Քրիստոս Որդի Աստուծոյ կենդանւոյ»․ եւ շուտով զղջացաւ, դուրս ելաւ, եւ լացաւ դառնապէս։

Եւ միւս Առաքեալքն՝ որոնք գայթակղեցան եւ դրդուեցան 'ի հաւատս, եւ չարչարանաց գիշերը փախան ցիր ու ցան եղան, ինչպէս ըսեր էր Զաքարիա մարգարէն, «Հարից զհովիւն եւ ցրուեսցին ոչխարքն»․․ Անոնք ալ յետ յարութեանն Քրիստոսի՝ Նորէն անդրդուելի հաստատեցան։ Այս էր Քրիստոսի ըսելը, թէ «ես աղաչեցի վասն քո, զի մի՛ պակասեսցին հաւատք քո․ եւ դու երբեմն դարձցիս եւ հաստատեսցես զեղբարս քո»։

Ես ալ պէտք է գիտնալ, թէ Քրիստոսի խօսքը ոչ միայն Պետրոսի կընայի, այլ նաեւ ամէն Առաքեալներուն․ ինչպէս յայտնի է Քրիստոսի խօսքէն՝ որ ըսաւ, «ահա սատանայ կամեցաւ խարբալել ըզձեզ»․ չըսաւ՝ «զքեզ» մի՛ Պետրոս, այլ ըսաւ «զձեզ», այսինքն զամենայն Առաքեալսդ իմ․ ապա ինչպէս սատանայէն մաղուիլը ամէն առաքելոց համար էր․ այսպէս Քրիստոսի

աղաչանքն ալ ամէն առաքելոց համար էր, որպէս զի անոնց հաւատքը չի պակսի գալու փորձանքէն, որ պիտի հանդիպէին. Քրիստոսի չարչարանաց օրերը տարակուսէին, փախչէին, պահուըտէին, դողն 'ի դողք պըտըտէին, բայց Քրիստոսի հաւատքէն չելնային։

Նաեւ աս յայտնի կը վկայէ Օգոստինոս 'ի մէջ 57 խնդրոյ հին եւ նոր կտակարանաց՝ ըսելով այսպէս. "Քրիստոս ասաց Պետրո-"սի, ես աղաչեցի վասն քո, զի մի պակա-"սեսցին հաւատք քո. եւ դու երբեմն "դարձցիս", եւ հաստատեսցես զեղբարս "քո. մի թէ միայն վասն Պետրոսի աղաչ-"եաց 'ի բաց հանելով զՅակոբոս՝ զՅո-"հաննէս՝ եւ զայլ առաքեալսն. եւ յայտ-"նի է, որ 'ի դէմս Պետրոսի՝ 'ի միասին ի-"մացեալ լինին բովանդակ առաքեալքն. "վասն այսորիկ ընդ աղաչելն վասն Պետ-"րոսի՝ առանց երկբայութեան աղաչեաց "վասն ամենեցուն"։

Արդ եթէ "մի պակասեսցին հաւատք քո" Քրիստոսի ըսելովը՝ Պետրոս եւ անոր յաջորդները անսխալ կըլլան նէ, ահա այն խօսքը սուրբ Օգոստինոսի վկայութեամբը՝ Քրիստոս 'ի դէմս Պետրոսի՝ ամենայն առաքելոց ըսաւ. ապա ամէն Առաքեալները

եւ անոնց յաջորդները իւրաքանչիւր առանձինն անսխալ են, եւ ոչ թէ միայն Պետրոս եւ անոր յաջորդները։

Դարձեալ, հաւատքն Պետրոսի՝ որ դաւանեց, թէ «դու ես Քրիստոս Որդի Աստուծոյ կենդանւոյ», անպակասելի կը մնայ ՚ի մէջ եկեղեցւոյ մինչեւ ՚ի կատարած աշխարհի. եւ չեն կրնար յաղթահարել զնա անհաւատք եւ հերետիկոսք. եւ եթէ այս հաւատքին անպակաս մնալուն համար Քրիստոս աղաչեց զՀայրն Աստուած, այս հաւատքը ամէն առաքեալները անկորուստ ունեցան. ապա ոչ միայն Պետրոսի համար, այլ միապէս ամէն առաքելոց համար էր Քրիստոսի աղաչանքը։

Որովհետեւ Պետրոսի դաւանելովը ըզՔրիստոս Որդի Աստուծոյ՝ միւս առաքեալներն ալ ՚ի միասին դաւանեցան, վասն զի Պետրոս ամէն առաքեալներուն բերնէն դաւանեց. ինչու որ Քրիստոս ամէն առաքեալներուն հարցուց ըսելով, «Իսկ դուք զի՞ ասէք զինէն, թէ իցեմ». ուստի եւ Տէրը ամէն Առաքեալներուն սաստիկ պատուէր տուաւ, որ իրեն չարչարանքէն ու մեռնելէն առաջ չի յայտնեն ճշմարիտ Մեսիա եւ որդի Աստուծոյ ըլլալը, որ Պետրոսին բերնովը դաւանեցին. «Յայնժամ

«սաստեաց աշակերտացն, զի մի՛ ումեք ասի-
«ցեն, թէ նա է Քրիստոսն». ինչպէս կը
գրէ Մատթէոս Աւետարանիչը։

Իսկ եթէ յատուկ այն հաւատքին համար էր, որ Պետրոս կը հաւատար Քրիստոսի, թէ Քրիստոս է որդի Աստուծոյ. ապա աղաչանքն Քրիստոսի էր միայն անոր համար, որ Պետրոս չի կորսնցընէ իր սրտէն իւր հաւատքը երեք անգամ ուրանալովը այն մատնութեան գիշերը. եւ անկից ցոյց կու տայ Քրիստոս ըսելովը՝ «Հաւատք քո». վասն զի «քո» բառը կը յայտնէ Պետրոսին ունեցած հաւատքը։ Եւ այսպէս տասն եւ մէկ Առաքեալներն ալ միապէս չի պակասեցան Քրիստոսի հաւատքէն, որ Պետրոսին բերնովը խոստովաներ էին, ինչպէս կը գրէ Յօհաննէս Աւետարանիչը, «Եւ մեք հաւատացաք եւ ծանեաք, եթէ դու ես Քրիստոսն որդի Աստուծոյ»։

Վասն զի տասը առաքեալները միայն գայթակղեցան, իսկ Պետրոս գայթակղելէն 'ի զատ՝ երեք անգամ ալ ուրացաւ, եւ նզովեց, եւ երդուում բրաւ, թէ չեմ ճանչնար անիկայ. բայց Քրիստոսի աղաչանքովը չի պակսեցաւ հաւատքէն մատնիչ Յուդային պէս. եւ յարութենէն ետեւ

միապէս խոստովանեցան զՔրիստոս, եւ միապէս առին զՀոգին սուրբ Քրիստոսի փչելովը, եւ առաքելութեան բալլիքը կապելոյ եւ արձակելոյ, Առաքելական կարգը եւ հովուութեան պաշտօնը քարոզելու սորվեցընելու, եւ Պենտէկոստէին օրը ընդունեցին լրութեամբ պարգեւաց զնոյն Հոգին Աստուծոյ։

## ՄԱՍՆ · Դ

*Թէ եկեղեցին Հայոց՝ Քրիստոսի երկուց բնութեանց վրայ ծուռ եւ մոլար կարծիք չունի, վասն որոյ ոչ հերետիկոս է եւ ոչ հերձուածող է։*

Հերետիկոսութիւնն է ուրացութիւն մը հաւատոյ մասին, կամ հաւանութիւն յայտնի մոլորութեան հանդերձ յամառութեամբ. ահա՛ շնորհօքն Աստուծոյ եւ աղօթիւք Սուրբ Լուսաւորչին՝ Հայոց եկեղեցին 'ի սկզբանէ անտի ոչ երբէք ուրացաւ յայտնեալ ճշմարտութիւն մը հաւատոյ մասին, եւ ոչ բնաւ հակառակ հաւատոյ եւ ողջամիտ վարդապետութեան եղեալ մոլորութեան մը հաւանեցաւ. այլ միշտ զայն կը հաւատայ, զոր ինչ միան-

դամ ընդհանրական եկեղեցին Քրիստոսի
կը հաւատայ եւ կառաջարկէ առ 'ի հա-
ւատալ. ինչպէս աչք ունեցողը կրնայ տես-
նալ Հայոց եկեղեցական գրեանց մէջը. եւ
կը դատապարտէ ծուռ եւ մոլար կարծիք-
ները ըստ վկայութեան Սրբազան հարց
եկեղեցւոյ։

Իսկ մեր խարդախ հակառակորդները
իրենց սուտ զրպարտութիւնները պարտը-
կելու համար՝ Հայոց եկեղեցւոյն ընդու-
նած ճշմարտութիւնը ծուռ մտօք մեկնու-
թիւն տալով՝ մոլորութիւն կը քարոզեն.
եւ դատապարտած մոլորութիւնն ալ՝ ընդ-
հակառակն ուղիղ մտօք մեկնելով՝ կը գան-
կատին կը բողոքեն եւ կը զրպարտեն, թէ
Հայոց եկեղեցին այս ինչ ճշմարտութիւնը
չընդունիր կուրանայ. զոր օրինակ, կը զըր-
պարտեն եւ կը բարբանջեն, թէ Հայոց Եկե-
ղեցին 'ի Քրիստոս երկու բնութիւնը չընդունիր, մի
բնութիւն կըսէ, վասն որոյ հերետիկոս է։

Հայոց եկեղեցին Եւտիքէսի պէս մոլար
մտօք մի բնութիւն 'ի Քրիստոս ըսողը՝ դա-
տապարտերէ եւ միշտ կը դատապարտէ.
բայց Սրբոյն Կիւրղի բանծին պէս՝ մի բը-
նութիւն 'ի Քրիստոս փոխանակ մի անձ-
նաւորութեան ուղիղ մտօք դաւանու-
թիւնը կընդունի եւ կը խոստովանի։

Սանկ ալ՝ Նեստորի պէս մոլար մտօք
երկու բնութիւն 'ի Քրիստոս ըսողը՝ դա-
տապարտէրէ եւ միշտ կը դատապարտէ,
ինչպէս որ Կոստանդնեայ ժողովն ալ դա-
տապարտեց. Բայց Սրբոյն Գրիգորի Աստ-
ուածաբանին պէս՝ ուղիղ մտօք երկու բը-
նութիւնը կընդունի եւ կը խոստովանի.
ուստի մի եւ նոյն խօսքը ուղիղ մտօք ըսես
նէ՝ ուղղափառութիւն է, եւ չար մտօք
ըսես նէ՝ չարափառութիւն է։

Սուրբ Օգոստինոսի ըսածին պէս,
«Աստուած մատնեաց զՔրիստոս 'ի մահ.
Յուդայ մատնեաց զՔրիստոս 'ի մահ».
այո, երկուքն ալ մատնութիւն էր, բայց
մէկ կերպ չեն. մատնութիւնն Աստուծոյ
երկրպագելի է. իսկ մատնութիւնն Յու-
դայի դատապարտելի։

Հիմա տես, թէ ինչ կընեն Գուլէճ-
ցիք. ծուռ մտօք ըսուածները՝ որ չարա-
փառութիւն են, Հայոց եկեղեցւոյն վրայ
կը դնեն կը բանբասեն Հռովմայ աթոռոյն
առջեւ. ան ալ անոնց խօսքին խաբվելով՝
Հայոց վրայ ծուռ դատում ընելով՝ մոլո-
րական կը ճանչնայ։ Իսկ յիրաւի՝ թէ որ
անոնց չարախօսութեանը վրայ հաւատա-
լով՝ զՀայոց եկեղեցին մոլորեալ սեպեր է
նէ, յայտնի է թէ սխալեր է մոլորու-

թեամբ գործոյ. վասն զի Հռովմայու ժողովքին այս ըրած դատումը՝ ՚ի վկայութիւն մարդոյ հիմնեալ կըլլայ։

Արդեօք ո՞ր ազգ, ո՞ր եկեղեցի, եւ ո՞ր ատեան՝ մոլորութեամբ գործոյ չի կրնար սխալիլ ի՞նչ եւ իցէ պատճառաւ, կամ վասն սիրոյ եւ պաշտպանութեան, կամ չարախօսաց հաւատալով, եւ այլն։

Ահա Քաղկեդոնի ժողովը մոլորութեամբ գործոյ սխալեցաւ. վասն զի երբոր Իբասայ թուղթը կարդացուեցաւ նէ, ըսին, թէ Իբաս է ուղղափառ. բայց այն թուղթը մոլորական էր, որ երկրորդ ժողովն Կոստանդնուպոլսի իբրեւ հերետիկոսական դատապարտեց։

Ա. Ոնորիոս փափը թուղթ գրեց յարեւելս, որ միակամադաւանից աղանդը ունէր. ապա պէտք էր, որ ամենայն արեւելեան եկեղեցիք Ոնորիոս փափին հերետիկոսութեանը հետեւէին. եւ այն մոլորամիտ վարդապետութիւնը՝ որ Եւտիքէսի չար սերմանցը պտուղն էր, իբրեւ անսխալ ընդունէին եւ հերետիկոս ըլլային. ահա աս ալ մոլորութեամբ հաւատոյ սխալեցաւ։

Ապա յայտ է թէ միայն ընդհանրական եկեղեցին Քրիստոսի կամ տիեզերական ժողովն է, որ մոլորութեամբ հաւատոյ չի

սխալէր․ ուստի յամին 1302 Ը Վոնիփակիոս փափին կոնդակին համար բողոքեցին առ ընդհանուր ժողովն․ եւ յամին 1491 Ը Իննովկենտիոսի կոնդակին համար բողոքեցին ընդհանուր ժողովոյն․ այսպէս ալ ուրիշ ժամանակներ եղաւ։ Որովհետեւ գիտէին թէ միայն ընդհանուր ժողովն է անսխալ եւ անպարտելի ըստ Տեառն բանի, որ կրնայ ուղղել եւ դատապարտել փափերուն սխալանքները։

Ա․ Վիգիլիոս փափը՝ Թէոդորոսի, Իբասայ, եւ Թէոդորետոսի գործքը՝ որ երեք գլուխ կըսուի, եղաւ ժամանակ, որ իբրեւ ուղղափառական ընդունեց․ եւ եղաւ ժամանակ, որ իբրեւ հերետիկոսական դատապարտեց, մի եւ նոյն Փափը զմի եւ զնոյն գործքը։

Դ․ Եւգինէոս փափը յառաջ կոնդակ հանեց, որ Բասիլեան ժողովը ընդունելի չէ, եւ ետքը յետոյ կոչումն ըրաւ վերջին կոնդակովը, եւ զնոյն ժողովը ընդունելի հրատարակեց, որ 'ի 16 գումարման Բասիլեան ժողովոյն կարդացուեցաւ։

Շատ հռոմայի Հայրապետներ իրենք զիրենք սխալական գիտէին, զորօրինակ Լեւոն փափը, Գ Իննովկենտիոս փափը․ Ը Կղէմէս փափը․ ԺԱ Գրիգոր փափը․ Ասի-

կայ իր կտակին մէջն ալ գրեց, թէ փափը կրնայ մոլորիլ եպիսկոպոսական ժողովի մէջն ալ, որ կըսուի Քօնսիլիօ-Էքու-մ։

Աւստի սուտ է եղեր ան խօսքը որ կը-սեն, թէ Հռոմայեցի Պապը կամ սուրբ Ժողովքը անսխալ է. որուն սխալական ըլլալը բաւական հասկըցուցինք, վասն զի մէկ փափը միւս փափին վճիռը չընդունիր, յաջորդը իր նախընթացին հակառակ կ՚ըլլէ, անոր կոնդակը եւ վճիռը կարհամարհէ, բանադրանքը կաւրէ նէ, ի՞նչ կըսես, հարկաւ երկուքէն մէկը կը սխալի։ Ահա է Ստեփաննոս փափը անիրաւութեամբ բանադրեց զՓորմոզ փափը, եւ մարմինը հանել տալով գերեզմանէն՝ Տիբերիս գետը նետել տուաւ. ասոր դէմ ելաւ Թ Յովհաննէս փափը, որ Ջատագով ըլլալով Փորմոզ փափին՝ անընդունելի վճռեց Ստեփաննոսին բանադրանքը։ Յետոյ Գ Սարգիս փափը դէմ կեցաւ այն վճռին՝ որ Յովհաննէս փափը ըրեր էր, եւ դարձեալ բանադրեց զՓորմոզ փափը. եւ հրամայեց, որ Փորմոզ փափէն կարգ առնողները՝ նորէն ձեռնադրըլին, ինչպէս գրուած է ՚ի պատմութիւնս փափից։

Հիմա պէտք եղաւ մեր հակառակորդներուն հարցընել, թէ այս փափերը հե-

ըետիկոս եղան , թէ չէ՝ միորութեամբ գործոյ սխալեցան։

Արդ թէ որ այն սխալեալ փափերը հերետիկոս չեն սեպուիր նէ , հապա ինչու Հայոց ազգը հերետիկոս պիտի սեպուի Քաղկեդոնի ժողովը կամ Լեւոնի փափը իբրեւ Նեստորական հերքելովը , որ ոչ լատին լեզու գիտէր , եւ ոչ անոնց գործ-քերուն ուղիղ թարգմանութիւնը ունէր , եւ ոչ այլ նոյն ժողովքէն գրով խապար մը ունէր , որովհետեւ հին սովորութիւն էր , որ թէ մէկ ազգէ մը հոն մարդ չէ գտնուէր նէ , ժողովքին որոշխութիւնը նոյն ազգին կը գրէին։

Նաեւ Զենոն կայսեր հրովարտակը տեսնալով , որ երեք առաջին ժողովքները միայն կը հաստատէր , եւ Քաղկեդոնի ժո-ղովը բաւելեայն կը նզովէր . Հայոց ազգն ալ ան տեսնալով , տումարին թարգմանու-թեանն ալ նայելով , ասորւոց պատմու-թեանը հաւատաց , ժողովքին սահմանը եւ տումարը իբրեւ նեստորամիտ հերքեց։

Նաեւ ան ատենն ալ Հայոց ազգը մեծ նեղութեան ու պատերազմի մէջ էր , որ Պարսիկները մեզի կրակապաշտ ընելու կը ջանային , քննելու եւ տեղեկանալու եր-կեք ժամանակ չունէր։ Ուստի այս մասին

անձեռնմխելի է Հայոց ազգը. վասն զի թէ որ Քաղկեդոնի ժողովը դնուաքէս եւ ըղ-Նեստոր նզովեց նէ, Հայոց եկեղեցին ալ 'ի սկզբանէ անտի կը նզովէ զնոյն հերետիկոսապետները. եւ եթէ Լեւոնի տումարը՝ Քրիստոսի Աստուածային եւ Մարդկային բնութիւնները 'ի մի անձն Քրիստոսի անշփոթ եւ անբաժան միաւորեալ կը խոստովանի նէ, Հայոց եկեղեցին ալ այն ուղղափառութիւնը կը խոստովանի 'ի սկզբանէ անտի, հեռի փախչելով 'ի Նեստորական եւ Եւտիքական ծուռ եւ մոլար վարդապետութիւններէ, ապա ոչ բնաւ կրնայ բռնիլ հերետիկոս, այլ քաջ ուղղափառ։

Ո՞ւր մնաց որ՝ անմիջապէս բուն ձեռագրէն Լեւոնի տումարին ճիշդ եւ ուղիղ թարգմանուած խօսքերը՝ նոյն Քաղկեդոնի ժողովոյն մէջը գտնուող Աւրիկեցի ու Պաղեստինացի եպիսկոպոսները չի կրցան իսկոյն ողջմտութեամբ իմանալ. այլ տարակուսեցան եւ ընդունել չէին ուզեր. որոնց համար երեսուն օր միջոց տրուեցաւ, որ քննեն ու ետքը ընդունին։

Հապա Հայոց ազգը որ ծուռ թարգմանութիւնը տեսնալով ու Նեստորամիտ կարծելով հերքեց նէ, մի՞ թէ մոլորութիւն համարուի էր այս բանը, որ հերետիկոս

սեպվի · ուստի կը հետեւի որ՝ ուրիշ բան չէ այս զրպարտութիւններն , այլ թէ նախանձ չար եւ թշնամութիւն , որ գործոյն մոլորութիւնը եւ հաւատոյն մոլորութիւնը մէկ զմէկ կը խառնեն եւ կը շփոթեն , որ ուղիղ տրամաբանութիւն չէ , այլ ծուռ եւ խաբէական։

Բայց կըսեն Գոլենցիք , թէ Հայոց ազգը ան ատենը մեծ նեղութեան մէջ ըլլալով՝ չէ կրցեր տեղեկանալ ժողովքին որպիսութեանը , եւ թշնամեաց ու չարախօսաց հաւատացեր է · հիմա պարտաւոր չէ՞ք տեղեկանալու , ու քաջ վերահաս ըլլալու , եւ այս պարտաւորութիւննիդ չի կատարելով՝ մեղադրելի չէ՞ք ըլլար մի։

Կը պատասխանեմ · այս պարտաւորութիւնը միայն մեզի համա՞ր է մի · մեզնէ առաջինը կայ · Հռոմայի աթոռը ամէն կերպիւ հանգստութիւն , կարողութիւն , եւ քննելու տեղեկանալու ամէն բաւական միջոցները ունի · ան ինչո՞ւ Հայոց ուղղափառութեանը վերահաս չըլլար · եւ հակառակորդ թշնամեաց չարախօսութեանցը մտիկ կընէ եւ կը հաւատայ կոր · եւ մեր վրայ սխալ եւ ծուռ դատում ընելով՝ ըղմեզ մոլորեալ կը համարի · մի՞ թէ ան պարտաւոր չէ՞ արդեօք , որ Եկեղեցւոյ Գլուխ Եմ

կրսէ , Հայոց եկեղեցւոյն որպիսութիւնը քննել եւ տեղեկանալ , ունեցած ծուռ կարծիքը ջնջել եւ հրատարակել , եւ անոր անգութ եւ անխիղճ թշնամեաց չարախօսութիւնները հերքել եւ խայտառակել։ Ա՜յո , անժխտելի պարտքն է իրեն , թէ որ հայր հասարակաց է նէ . ուստի նախ եւ յառաջ ան թող մեզի բարի օրինակ մը ըլլայ , մեր եկեղեցւոյն որպիսութիւնը քննէ եւ իմանայ . եւ ուղղափառութիւննիս հրատարակէ 'ի լուր ամենայն աշխարհի։ Բայց Ա՛ն՝ աս իրեն պարտքը չի ճանչնար . ինքը՝ զրպարտողաց ու չարախօսաց մտիկ կընէ ու կը հաւատայ . մաքուր ոսկին իբրեւ ժանգոտած պղինձ կը ճանչնայ ու կարհամարհէ . եւ անկից ետեւ ժողովքին որպիսութիւնը քննելու մեզի պարտաւոր կը սեպէ ու կը մեղադրէ նէ , անոր մեղադրանքը՝ ինչ կըսես , կը զօրէ՞ արդեօք մեր ազգին իրաւաբանութեան առջեւը . ոչ երբէք։

## ՎԱԽՃԱՆ ԲԱՆԻՍ

Սպաքէն մինչեւ հիմա ըսածներէս յայտնի եղաւ Գոլէճցւոց որպիսութիւնը, որ անհնարին Թշնամի ըլլալով Ազգին՝ եւ անարատ եկեղեցւոյս հայաստանեայց՝ ոչ միայն կը Թշնամանեն իբրեւ հերետիկոս, չարափառ, եւ հերձուածող, այլ եւ պարզամիտ ժողովուրդն ալ կը գայթակղեցընեն. իրենց հնարած սուտերը իբրեւ Հռովմայու վճիռ սուտ կոնդակներով ժողովրդոց հաւատացընելու կը ջանան, ինչպէս երսուն տարի յառաջ՝ փորձիւ հասկըցվեցաւ քանի մը անիրաւ Գոլէճցիներուն վրայ, որոնք Ինքնագլուխ վճիռներ կը կարէին, եւ չընդունողը իբրեւ հերետիկոս կը դատապարտէին. Որոնք էին Քուցիանթին, Ռուբաձին, Արիստակէսը, փափազ Գէորգը, Ալանկիլը, որոնք յայտնի պռաւցին Մօնսինեօռ Քօռէսի եպիսկոպոսին առջեւ՝ ըսելով, Թէ որ Հռոմայէ անոր հայոց եկեղեցւոյն ուղղափառ ըսէ նէ, մենք ալ Պապը սխալեցաւ կըսենք։

Հիմա ալ անոնց յաջորդեց Հասունեան մը եւ իրեն անիրաւ համախոհները, որոնք անխիղճ Թշնամի ըլլալով ազգին, միշտ

սուտ ու փուտ վճիռներով եւ անիրաւ զրպարտութիւններով համազգի եղբարց մէջ խռովութիւն եւ ատելութիւն ձգելու կը ջանան ., որ չըլլայ թէ ժողովուրդները մտածելով ու խորհրդածութիւն ընելով , որ մենք ամէնքս մէկ հօր զաւակ ենք , մէկ ազգ՝ մէկ արիւն՝ եւ հարազատ եղբայրք ենք . ա՜ս ի՞նչ արհամարհելի տարաձայնութիւն է , որ մէջերնիս ինկեր է , իրարու ծուռ կը նայինք , գէշ կըսենք , եւ փոխանակ օգնելու ազգասիրութեամբ՝ վնաս հասցընելու կը նայինք . ա՛րդեօք ի՞նչ է ասոր պատճառը . ո՞վ է, աս գէշութիւնը ձգողը մեր մէջը . հարցընենք փընտռըւենք հասկընանք , եւ ասոր ճարը գըտնալով ազգասիրութիւն մը ընենք ոչ բանիւ , այլ իրօք . . . Սանկ ըսելով թէ որ քննենք նայինք եւ հասկընանք , թէ անխղճմըտանք քահանայից ազգակործան հնարքն է ժողովրդոց վրայ տիրապետելու՝ ոչ ուրիշ բանի համար , այլ թէ իրենց շահին եւ օգտին համար . աս որ հասկընան ժողովուրդները , եւ քրիստոնէավայել եղբայրսիրութեամբ երթան իրարու հետ մէկ սիրտ մէկ հոգի ըլլան նէ , տեսէք , տեսէք . . .

Հապա պէտք է կըսեն , որ ասոր ճարը նայինք , մէջերնիս ատելութիւն եւ թշնա-

մանք ձգենք, հայոց եկեղեցւոյն վրայ սուտ զրպարտութիւններ ընենք, թէ անոնք Մոլորեալ հերետիկոս եւ հերձուածողեն, եւ անհաւատներէն աւելի գէշ են. Արքայան դատը հրաման չունի, որ անոնց եկեղեցին ոտք կոխէ, եւ հոգեւոր հաղորդակցութիւն ընէ, ընողն ալ դժոխքը կերթայ եւ այլն եւ այլն։ Այս խօսքերով ժողովուրդնիս պաղեցընենք հայոց հետ սէր եւ ընկերութիւն ընելէն; որ չըլլայ թէ միաբանութեան միջոցներ ըլլան. առջի ատելութիւնները եւ հալածումները անդադար յիշեցընենք անոնց, որոնց բուն պատճառը մենք կըլլայինք, (ինչպէս կը գրէ Չամչեան Հ. Միքայէլը,) որոնք մտքերնին գալով մէկ վրէժխնդրութեան ոգի մը ստանան, ու հեռու կենան հայերէն։ .....Ներքը գանք նէ, Հռոմայու սուրբ աթոռոյն վճիռն է ըսելով, շինծու կոնդակներ ալ կը հանեմք կը կարդանք. կամ կաշառքով եւ կամ խաբելով բերել կուտանք անանկ երկդիմի եւ անորոշ կոնդակներ, եւ մենք ուզածնուս պէս՛ կը մեկնենք. վերջապէս ամէն ճիգերնիս 'ի սոյն կը թափենք, եւ հարկաւ խռովութեան հոգին ալ մեզի կը յաջողէ հեռ, նախանձ, բարկութիւն, հակառակութիւն ձգելու երկու համազգի եղբարց մէջ..:Մեզի մի միայն

խոչընդոտ եւ արգելք՝ Մխիթարեանք եղած պիտի ըլլան, որ յերկուս հետս կը կաղան, հայոց մատենագրութիւն եւ ջատագովութիւն կընեն. ուստի անոնց համար ալ գանկատ եւ բողոք կընենք, անոնց ալ անունը կաւրենք. անանկ որ՝ անոնք ալ նեղը իյնալով բռնադատուին մեր դրութիւնները հաստատելու եւ ստորագրելու. ...«Ահա այս է Գոլէճցիներուն ընթացքը, գանք հիմայ Աբբացիներուն։

Յիրաւի ինչպէս որ գուշակեցին խորամանկ Գոլէճցիները նէ, անանկ ալ կատարվեցաւ. վասն զի Աբբացիք ալ այն դժոխք պարսաւագրքին ամբաստանութիւնները ցրելու; եւ զիրենք Հռովմայ գահին առջեւ արդարացընելու համար՝ անանկ բանի մը ձեռք զարկին, որ իրենց այսչափ ատենէ 'ի վեր կարծուած խոհականութեանը եւ կենցաղագիտութեանը երբէք չի վայլելէն 'ի զատ, ընդհանուր հայոց ազգին անոնց վրայ ունեցած համակրական սէրը եւ պարծանքը եւ համարմունքը բոլորովին կորսընցուցին։ փոխարէն այն հաւատարիմ սիրոյն՝ եւ ջատագովութեանց՝ եւ կերպ կերպ օժանդակութեանցը՝ որ բոլոր ազգէս առատօրէն ընդունեցան մինչեւ հիմա, ահա ընծայեցին մեզի կսկծագին եւ

խոցոտիչ փուշ պսակ մը՝ այն է անիրաւ-
պարտաւատեարը, որ կը վճռէ, թէ հերձ-
ուածող եւ մոլորեալ են հայք, եւ անոնց եկեղեցին
մնալ արժան չէ. ահա հաւատացումն անօրինակ
եւ սոսկալի, հաւատացին մեզ չար փոխա-
նակ ընդ բարւոյ, ատելութիւն փոխանակ
սիրոյ մերոյ։

Ափսոս ափսոս այն ազգասիրական ճա-
ռերուն, որ ատեն ատեն բազմավէպին մէջ
կը գրեին իբրեւ Երգ անմիաբանութեան հայ-
ոց, եւ յորդոր սիրոյ եւ միաբանութեան, բայց
Քրիստոսի խօսքն է որ կըսէ քահանայից
համար, «ասեն եւ ոչ առնեն»։

Ո՞ւր է եղեր Արքայեան իմաստուն եւ
պանծալի վարդապետաց՝ ազգին օգտին
համար գրաւոր աշխատութեանց պտու-
ղը, ո՞ւր է եղեր անոնց ազգասիրական ջան-
քը. ազգասիրութիւն, ոչ երբէք։ Սան գէ
ա՛ն ատենը իրօք եւ ճշմարիտ ազգասէր
կըսուէին, երբոր Հայոց եկեղեցւոյն ուղղա-
փառութիւնը Հռովմայ գահին առջեւ
նկարագրէին հասկցընէին ըսելով, թէ
սուտ է այն համբաւը՝ որ լսերէք Հայոց
ազգին վրայ, թշնամեաց չարախօսաց զըր-
պարտութիւններն են, նիւթական բառե-
րու կռիւներ են, Հայոց եկեղեցին իրօք
նոյն ուղղափառ հաւատքը ունի, զոր ինչ

ունի ընդհանուր եւ Առաքելական եկեղեցին Քրիստոսի. մասնաւոր անձանց գըրուածները ազգին ամբողջութեանը եւ ընդհանուր լրութեանը չեն վերաբերիր, որ Հայոց եկեղեցին մեղապարտ կացուցանեն. եւ այլն եւայլն։

Աս կերպով թէ որ ջանք ընէին 'ի յօգուտ ազգիս եւ 'ի փառս Աստուծոյ, եւ ազգիս լրութեանն ալ գրէին յայտնի ընէին իրենց բարեմիտ ջանքը, որ իսկոյն յօժարակամ կամօք կընդունէր անպատում ուրախութեամբ եւ ձեռնտու կըլլար բաւական միջոցներով, որ աս աղէտալի եւ վնասակար երկպառակութիւնը ելլէ ազգիս մէջէն, եւ համահայր եւ համամայր երկու եղբարք աստուածահաճոյ սիրով եւ միաբանութեամբ ողջագուրեն զիրեարս. Ան առենը յիրաւի կըսէինք, թէ Աբբայեան հարք այս գեղեցիկ՝ օգտակար՝ եւ Աստուածահաճոյ գործքին պատճառ ըլլալով՝ ազգասիրական ծառայութիւն մը ըրին ազգիս 'ի փառս սուրբ եկեղեցւոյ։

Բայց հիմա՝ որ այս տգեղ՝ վնասակար՝ եւ Աստուածընդդէմ գործքին ձեռնամուխ եղան, եւ առաւել եւս ընդարձակեցին բաժանման խորոցը եւ հեռաւորութիւնը, մարած կրակները նորէն արծարծեցին, որ

'ի հուր մաշէ մնացեալ մասն ալ եղբայրա-
տեցութեան փքովք եւ փառասակար նիւ-
թերով, սոր ազգասիրութիւն ըսենք թէ
ազգատեցութիւն, բարեկամութիւն ըսենք
թէ թշնամութիւն։ Որդեօք միայն բուն
Հայոց ազգը վիրաւորեցաւ այս մասին,
ոչ. այլ նաեւ Հռովմէական Հայոց բարե-
միտ եւ խոհական մասն ալ մեծապէս ցա-
ւեցաւ, ինչպէս լսեցինք շատերուն բեր-
նէն, թէ աս ինչ բան էր, որ ըրին աս մեր
իմաստուն վարդապետները տասնկ լուսա-
ւորեալ եւ ամենափափուկ ժամանակս
մէջ. մենք ինչ կը յուսայինք տեսնելմէ, ա-
տոնք ինչ ըրին... եւ այլն եւ այլն։

Ես ալ ըսեմ, թէ Գաբէլէթթի լատին
քահանան Հայոց պատմութիւն կը շինէ, եւ
նոյն պատմութեանը մէջ մեր ազգին եւ
եկեղեցւոյն կրօնքը կը պախարակէ, հե-
րետիկոս հերձուածող եւ մոլորեալ կը գրէ
նէ, արդեօք աս տեղեկութիւնները ուսկից
առեր է այն քահանան։ Ոբբացիներէն ա-
ռեր է՝ կը խղճամ ըսելու. բայց կրնամ
ըսել թէ, արդեօք արժան չէ՞ր այն Վ.,
վարդապետաց թէ որ ազգասէր էին, այն
քահանային խապար տային եւ հասկըցը-
նէին, թէ այդ տեղեկութիւնները սուտ
են եւ զրպարտութիւն են. ա՞յս է ունեցած

ազգասիրութիւններն։

Չեմ ուզեր անյիշատակ թողուլ եւ այն նորելուկ տետրակը, որ այս օրերս հրատարակեր է Վ. Հ. Սերովբէ Ճէվահիրճեանը ընդ դէմ պարսաւագրքին գօլէճեանց, որ որպէս թէ ջատագովել ուզելով Արքայեան միաբանութիւնը՝ յայտնի եւ անտանելի սուտ կեղծիք մը (մասալ) կը պատմէ, ոչ հին ժամանակի անյայտ եւ տարակուսելի եղած բաներու վրայ, այլ նոր եւ յայտնի ամէնուն աչքովը տեսած եւ լսած նիւթի մը վրայ։

Իբր զի՝ 32 տարի յառաջ իրեն վեց ընկերներովը մէկ տեղ Հայոց եկեղեցին եկած, վեղար առած; եւ հանդիսաւոր պատարագ ըրած ատենը՝ Պիոս Է պապին անունը յիշատակած է եղեր։ Չգիտեմ, թէ մըտքովը յիշատակեր է արդեօք, եթէ բերնովը. մէկ անգա՞մ ըրեր է աս յիշատակութիւնը, թէ ամէն անգամ պատարագ ըրած ատենը. կամ ո՞ր օր, ո՞ր եկեղեցին, եւ ո՞ր կիրակի եղեր է այս բանը։ Աս անանկ բացայայտ եւ անտարակուսելի սուտ մըն է, որուն ոչ միայն բուն Լուսաւորչեան հայերը, այլ եւ ան ատենը Հայոց եկեղեցին եկող հաղորդող՝ հռոմէական համազգի եղբարք ալ կը վկայեն կոր ամաչելով եւ զար-

մանալով։ Նոր զարմանալի սուտ չեմ կըր-
նար ըսել, այլ ստակալի եւ սարսափելի, վերջի
երդմամբ հաստատելու ալ կը խոստանայ
ու եղջերուաքաղ մտացածին առասպելը։
Մ՚եղք, որ քրիստոնէի յանուն ունի, եւ
վարդապետի պատիւ, ամօթ մեծ ամօթ։

Նոյն այն վարդապետն է. որ այն ատենը
Կոստանդնուպոլսոյ Վիքար Մօնսինեօռ
Վինկենտիոս Քօռէսի եպիսկոպոսին իրենց
վրայ հանած քանադրանաց կոնդակին դէմ՝
գրած ունի «Յայտարարութիւն ուղղափառու-
թեան Եկեղեցւոյն Հայոց». Այնպէս գրած է եւ
Վ. Հ. Թոմմայ վարդապետ մաքսուդեանը,
որոնց բուն ձեռագիրները պահուած են
մեր քովը. եւ ժամանակը ստիպէ նէ, Զամ-
չեանին Վ. Հանէին հետ միանգամայն տպվե-
լու եւ հրատարակվելու կը փութամ 'ի
պարծանս ուղղափառութեան սուրբ Եկե-
ղեցւոյն Հայոց։

Ի վախճան բանիս, թէ «որ անօրէն
«ապստամբ հարկը զմեզ ստիպելով՝ մէկ
«կամ մեկալ կողմին դպչելու բան մը ը-
«սեցինք նէ, ներումն կը խնդրեմ»։

Ն. Ծ.
ՍԻԵՏԻՍ · ՎԱՐԺԱՊԵՏ
ՊԻՐՊԻՐԵԱՆ